

Ֆոտո՝ Ա. ՇԱՅԽԵՏԻ

# ԼԵՆԻՆԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

(Հերոսական)

*ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ*

Մենք փող զարկինք և արձագանքն ահավոր
Երկրից-երկիր որոտաձայն շառաչեց,
Եվ արտերում միլիոնավոր, բյուրավոր
Ըմբոստությունն ահագնացավ ու աճեց:
Զնդաններում, խրճիթներում, հանքերում,
Ուր տառապած մա՛րդն է հարթում իր
ուղին, —
Ոտքի ելան ահազանգի զանգերով
Գնդերն անդուլ գործարանի ու հողի:
Եվ ոտնաձայնը գնդերի ընթացող
Եվ շառաչյունը զենքերի մահահոտ —
Խրճիթներում հնչեց, որպես մարտակոչ,
Պալատներում պայթեց, իբրև մահվան բոց:
Եվ թափորի ելած բոլո՛ր գնդերի,
Բոլոր ըմբոստ բանակների առաջում —
Արդեն ննջած Առաջնորդի պանծալի,
Անձեռագործ դիակառքն էր շառաչում...
Երբ ձգվեց հերոսական, փառավո՛ր,
Եվ կայծակներ շռնդալով շողացին,
Եվ դրոշներ հազարավոր, բյուրավոր
Նրա վերև արնանման դողացին:
Եվ լուռ ննջած Առաջնորդի դագաղի
Երթին ելած բազմություններն այդ անափ
Երդում տվին պայքարելու կատաղի —
Մինչև վերջի՛ն, մինչև վերջի՛ն հաղթանակ...
Մենք փող զարկինք և արձագանքն ահավոր
Երկրից-երկիր որոտաձայն շառաչեց,
Եվ արտերում միլիոնավոր, բյուրավոր
Ըմբոստությունն ահագնացավ ու աճեց:




*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 1

ՀՈՒՆՎԱՐ

1955 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Երևանի Ի. Կռիլովի անվան դպրոցի պիոներների ելույթը Ծխախոտի գործարանի ակումբում

*Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ*

# ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

Գ. Մ. ԿՐԺԻԺԱՆՈՎՍԿԻ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ



լադիմիր Իլյիչ Լենինի հետ ես ծանոթացա 1893 թվականին մեր մարքսիստական խմբակի ժողովում։

Այդ ժամանակ Պետերբուրգում գոյություն ունեին ռևոլյուցիոն ընդհատակյա մի քանի խմբակներ։ Մեր խմբակն այնքան էլ բազմամարդ չէր. բաղկացած էր գլխավորապես ինձ նման մարդկանցից՝ տեխնոլոգիական ինստիտուտի ուսանողներից։

Մի անգամ մեր ընկերներից մեկը հայտնեց, որ Պետերբուրգ է ժամանել նշանավոր ռևոլյուցիոներ Ալեքսանդր Ուլյանովի եղբայրը՝ Վլադիմիր Ուլյանովը։ Ալեքսանդրի մասին մենք բոլորս, ինհարկե, լսել էինք և գիտեինք, որ նրան մահապատժի է ենթարկել ցարական կառավարությունը, բայց կրտսեր Ուլյանովի մասին մեզանից ոչ ոք ոչինչ չգիտեր։

Մեր խմբակը հավաքվում էր Զինաիդա Պավլովնա Նեվզորովայի բնակարանում։ Եվ ահա մի օր այդտեղ եկավ քսաներեք տարեկան մի համեստ երիտասարդ։ Առաջին հայացքից նա կարծես ոչնչով աչքի չէր ընկնում։ Բայց հենց որ Ուլյանովը խոսեց, տվեց մի քանի հարցեր և ռեպլիկաներ, մեզ զարմացրին նրա մտքի խորությունն ու սրությունը։ Իսկ մի քանի րոպեից հետո նա բոլորովին գրավեց մեր ուշադրությունը։

Վլադիմիր Իլյիչը բոլորիս հիացրեց ոչ միայն իր խելքի ուժով ու բացառիկ շնորհքով, այլև հոգեկան հարուստ ներքնաշխարհով։ Սկզբում նա արտաքնապես կարող էր թվալ պարզ ու սովորական, բայց դա միայն առաջին րոպեին էր։ Նրա փայլուն մուգ աչքերի արտահայտությունը և ճակատի գեղեցիկ գծերը հիացնում էին յուրաքանչյուրիս։ Դժվար է պատկերել նրա դեմքի և աչքերի արտահայտությունը։ Երբեմն մտածելիս նրա խորաթափանց աչքերը թվում էին թախծոտ ու մռայլ, երբեմն էլ առկայծում էին թեթև, իրոնիկ ժպիտով։ Նրա հայացքում կային այնպիսի ուժ և աշխուժություն, որ անմիջապես կարելի էր ասել, որ այդ մարդը արտասովոր եռանդի տեր է, ստեղծված է ռևոլյուցիոն պայքարի համար։

Հենց նույն երեկոյան, երբ մենք ծանոթացանք Վլադիմիր Իլյիչի հետ, նա մեզ համար կարդաց իր նոր աշխատությունը, որը նվիրված էր Ռուսաստանի տնտեսական զարգացման հարցերին։ Այդ թեման այն ժամանակ առանձնապես շատ էր հուզում մեզ՝ ռուսական մարքսիստներիս։ Իր աշխատության մեջ Վլադիմիր Իլյիչը տալիս էր մեզ անհանգստ հարցերի կոնկրետ, խոր և անվիճելի լուծումը։ Մենք հասկացանք, որ այդ մարդը մեզանից շատ ավելի հեռուն է տեսնում։

Առաջին իսկ երեկոյից Վլադիմիր Իլյիչը դարձավ մեր խմբակի կենտրոնական դեմքն ու ղեկավարը։

## ԸՆԴՀԱՏԱԿՈՒՄ



ր ճաղատության և վիթխարի գիտելիքների համար Վլադիմիր Իլյիչին մենք «ծերունի» էինք անվանում...

Երկար ժամանակ չէր անցել, ինչ մենք ծանոթացել էինք Վլադիմիր Իլյիչի հետ, բայց մեր խմբակում ամեն ինչ փոխվեց, խմբակի աշխատանքը բոլորովին այլ դարձավ։

Մինչ այդ մենք կապված էինք միայն բանվորների փոքր խմբերի հետ, որոնց օգնում էինք ուսումնասիրելու մարքսիստական թեորիան. իսկ այժմ գործարաններում ու ֆաբրիկաններում մենք անցանք լայն ագիտացիայի։ Մենք կազմակերպում էինք միտինգներ, մայովկաներ, տարածում էինք թռուցիկներ։

Վլադիմիր Իլյիչը առաջարկեց մեզ բաժանվել խմբերի այնպես, որ յուրաքանչյուր խումբը աշխատանք տանի քաղաքի որոշակի ռայոնում։ Ամբողջ աշխատանքը ղեկավա-





րում էր կենտրոնը՝ Վլադիմիր Իլյիչի գլխավորությամբ:

Առաջ մենք հաճախակի հյուր էինք գնում միմյանց Պետերբուրգի մի ծայրից մյուսը: Վլադիմիր Իլյիչը արգելեց գործին չօգնող նման այցելությունները:

— Հիշեցե՛ք, որ մենք կատաղի պայքար ենք մղում ինքնակալության դեմ,— ասում էր նա,— մեզ պետք է հին ռևոլյուցիոներներից կոնսպիրացիա*) սովորել:

Վլադիմիր Իլյիչն ինքը հոյակապ կոնսպիրատոր էր: Նա կարողանում էր շատ ճարպիկ կերպով թաքնվել լրտեսներից: Նա ուշի-ուշով ուսումնասիրում էր Պետերբուրգի միջանցիկ բակերի դասավորությունը: Տեղ գնալիս հաճախ նա իր հետ վերցնում էր նաև մի ուրիշ գլխարկ: Լրտես տեսնելով, նա արագ մտնում էր մոտակա բակը, անմիջապես փոխում գլխարկը, բարձրացնում օձիքն ու արդեն մյուս փողոցում բոլորովին անճանաչելի էր դառնում:

1895 թվականին Վլադիմիր Իլյիչը մեկնեց արտասահման, որպեսզի կապ ստեղծի ռուսական մարքսիստ-էմիգրանտների խմբի հետ: Վերադարձին ժանդարմները մանրամասնորեն ստուգեցին Լենինի իրերը, բայց որքան էլ չարչարվեցին, արգելված ոչ մի բան չկարողացան հայտնաբերել: Լենինը կարողացավ իր երկտակ ճամպրուկի մեջ լրտեսներից թաքցնել և անցկացնել անլեգալ գրականություն ու տպագրական նոր սարքավորում: Ինչպիսի՜ հրաշալի նվեր էր դա մեզ համար, այժմ արդեն կարելի է տպագրել և՛ մեծ թվով թռուցիկներ, և՛ նույնիսկ բրոշյուրներ:

*) Կոնսպիրացիա — գաղտնապահություն:



Լենինը բանվորական խմբակում:

Գործ՝ Վ. ՊՐԱԳԵՐԻ

Աշխատանքն օրըստօրե ավելի լայն թափ էր ստանում։ Վլադիմիր Իլյիչը միավորեց Պետերբուրգի մարքսիստական բոլոր խմբակները և ստեղծեց «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը»։

Ոստիկանությունը ոտքի էր ելել հետապնդելու և ձերբակալելու Ուլյանովին։

1895 թվականի դեկտեմբերին ձերբակալեցին Լենինին, ինչպես նաև ղեկավար կենտրոնի մեջ մտնող բոլոր մարդկանց։ Ձերբակալեցին Վանեևին, Ստարկովին, Զապորոժեցին, ինձ...

Մենք նստած էինք հինգ քայլ երկարություն և երեք քայլ լայնություն ունեցող «մեկուսարաններում»։ Վերևում կար մի փոքր լուսամուտ։ Մենք մեկ տարուց ավելի անցկացրինք այդ մռայլ խուցերում։

Ամեն օր մեզ առանձին-առանձին դուրս էին հանում օդափոխության։ Մենք ման էինք գալիս բանտի բակի փայտե վանդակներում։ Մեջտեղում, աշտարակի վրա դանդաղ անցուդարձ էր անում ժամապահը, որպեսզի բանտարկյալները չխոսեն միմյանց հետ։

Իմ խուցի լուսամուտից կարելի էր տեսնել բանտի բակը և ման եկող բանտարկյալներին։ Դա հեշտ չէր։ Ամուր փակված դռան դիտանցքից անընդհատ հետևում էր վերահսկիչը։ Բայց ոչ մի ուժ չէր կարող զսպել ինձ այն ժամերին, երբ իմ հաշվով ման գալու պետք է դուրս եկած լիներ Վլադիմիր Իլյիչը...

Բանտում բոլորս էլ գրագրություններով կապված էինք միմյանց հետ։ Գրագրությունների պայմանական նշանների մասին մենք պայմանավորվել էինք բանտարկվելուց առաջ, գիտենալով, որ ռևոլյուցիոները պետք է պատրաստ լինի ամեն մի անակնկալի։ Նամակներում մենք միմյանց հայտնում էինք դրսից իմացած նորությունները, պատմում էինք մեր բանտային կյանքի մասին։ Լենինը գրագրություններով կապված էր բոլորիս հետ։ Նրա նամակներն զգաստացնում էին մեզ և սովորեցնում դիմանալ ամեն մի դժվարության։ Նրա հոգեկան ուժն այնքան մեծ էր, որ կարողանում էր քաջալերել։

Նույնիսկ բանտում Լենինը շարունակում էր ռևոլյուցիոն պայքարը։ Նա կապված էր այն մարդկանց հետ, որոնց ոստիկանությունը չէր կարողացել ձերբակալել։ Լենինը ղեկավարում էր նրանց և ուղղություն տալիս աշխատանքին։

Ձերբակալությունը չկարողացավ նրան կտրել ռևոլյուցիոն պայքարից։

## ԱՔՍՈՐՈՒՄ



ինուսինսկից հիսունվեց վերստ հեռու, Ենիսեյի ուղղությամբ, Շուշ գետի ափին ընկած էր Շուշենսկոյե գյուղը, որտեղ աքսորված էր Վլադիմիր Իլյիչը։ Իմ և Վ. Վ. Ստարկովի աքսորավայրն էր Տեսինսկոյե գյուղը։ Մեր մնացած ընկերներին աքսորել էին տարբեր տեղեր, միմյանցից տասնյակ ու հարյուրավոր վերստ հեռու։ Ցարական ժանդարմները ռևոլյուցիոներներին թույլ չէին տալիս միասին ապրել նույնիսկ հեռավոր սիբիրյան աքսորավայրում։

Վլադիմիր Իլյիչը Շուշենսկոյե գյուղը կատակով անվանում էր «Շու-շու-շու»։ Իր մորը՝ Մարիա Ալեքսանդրովնային, որին ինքը վերաբերվում էր ջերմ հոգատարությամբ և յուրաքանչյուր փոստով նամակ էր ուղարկում, նկարագրում էր «Շու-շու-շու»-ն որպես գեղեցիկ գյուղ։ Նամակներից մեկում նա նույնիսկ գրել է. «Ամառը ես անցկացնում եմ «Սիբիրյան Իտալիայում», ինչպես այստեղ անվանում են Մինուսինսկի օկրուգի հարավային մասը»։ Բայց այդ «Իտալիայում» հաճախ քառասուն և ավելի բարձր աստիճանի սառնամանիքներ էին լինում։

Երբեմն մեզ հաջողվում էր միմյանց հյուր գնալ, այդ օրերը մեր աքսորական միօրինակ կյանքի ամենաերջանիկ օրերն էին։

1897 թվականի վերջերին ինձ թույլ արվեց մեկնելու Շուշենսկոյե։

1898 թվականի նոր տարվա նախօրյակին Վլադիմիր Իլյիչը իր մորը գրեց.

«Արդեն մի քանի օր է, ինչ ինձ մոտ է ապրում Գլեբը, որը թույլտվություն է ստացել տոն օրով լինելու այստեղ։ Մենք շատ լավ ենք ապրում և շատ էլ ման ենք գալիս։ Եղանակը մեծ մասամբ տաք է լինում...»։ Մի ուրիշ նամակում նա գրում էր. «Շու-շու-շու-ում այժմ իսկական տոնական օրեր են, և ես չնկատեցի, թե ինչպես անցավ այդ տոն

օրը։ Գլեբին շատ դուր է եկել Շու-շան։ Նա հավատացնում է, որ այստեղ ավելի լավ է, քան Տեսում (դե Տեսի մասին ես էլ նույնն էի ասում։ Ես էլ կատակով ասացի, թե լավ է այնտեղ, որտեղ մենք չկանք)...»։

Մի անգամ մեզ՝ աքսորյալ ռևոլյուցիոներներիս հաջողվեց հավաքվել միասին։ Պետք էր խոսել քաղաքական շատ կարևոր հարցերի մասին։ Այդ գործը ղեկավարում էր Վլադիմիր Իլյիչը։ Իսկ երբ մենք վերջացրինք այդ աշխատանքը, նա սկսեց կատակներ անել, զվարճացնել բոլորիս։ Կյանքում Լենինը շատ հասարակ, սրտաբաց և ուրախ մարդ էր։

— Այդպիսի գիտուն մարդ և այդքա՞ն հասարակ,— ասում էին նրա մասին Սիբիրի գյուղացիները։

Ամեն ինչ նրա մեջ գրավիչ էր. և՛ այն, թե ինչպես նա ծիծաղելով կկոցում էր աչքերը, և՛ նույնիսկ այն, թե ինչպես նա զայրանում էր։ Ես շատ էի սիրում, երբ նա մատները դնում էր ժիլետի թևատակը և գլուխը մի փոքր թեքելով դեպի ետ սկսում էր արագորեն անցուդարձ անել սենյակում։ Ինչ-որ մի զարմանալի սիրալիրություն կար նրա այդ կեցվածքում։

Վլադիմիր Իլյիչը ծիծաղում էր սրտանց, մինչև որ աչքերն արցունքոտվում էին։ Այդպես կարող էր ծիծաղել միայն շատ լավ և բարի մարդը։ Իզուր չէր, որ երեխաներն այդքան սիրում էին նրան և նա էլ՝ երեխաներին։



Պատվիրակները Լենինի մոտ։

Գործ՝ Վ. Ա. ՍԵՐՈՎԻ

Բայց նա կարող էր լինել նաև խիստ, երբ այդ էին պահանջում ժողովրդի շահերը։

Մի անգամ աքսորավայրում մենք խոսում էինք այն մասին, թե մեր երկրում ինչպիսին պետք է լինի կյանքը ռևոլյուցիայի հաղթանակից հետո։

— Երբ մենք կհաղթենք, մենք կվերացնենք մահապատիժը,— ասացի ես։

— Բոլորովին,— բացագանչեց Վլադիմիր Իլյիչը,— մենք պետք է անխնա ոչնչացնենք բոլոր սրիկաներին, ժողովրդի թշնամիներին։ Մենք անպայման կմաքրենք հողը լրտեսներից և վնասարարներից։

Լենինը շատ էր սիրում Նեկրասովին։ Նա հաճախ էր կրկնում Նեկրասովի տողերը.

Այն սիրտը, որ հոգնել է ատելուց,
Չի կարող նաև սիրել։

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԺԱՄԱՆԱԿ



լադիմիր Իլյիչը միշտ էլ շատ էր աշխատում։ Ե՛վ բանտում, և՛ աքսորում նա բազմաթիվ գրքեր էր ստանում։ Մենք զարմանում էինք, թե նա երբ է հասցնում այդքան կարդալ. բայց չէ՞ որ նա գիրքը սովորական ձևով չէր կարդում. նա մանրամասնորեն ուսումնասիրում էր, քաղվածքներ հանում, նշումներ կատարում։ Աքսորում եղած ժամանակ Լենինը գրեց ավելի քան երեսուն աշխատություն, այդ թվում նաև «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» մեծածավալ գիրքը։ Միաժամանակ փող վաստակելու համար նա ստիպված էր թարգմանություններ կատարել անգլերենից և գերմաներենից։

Վլադիմիր Իլյիչն ամեն բան անում էր եռանդով, հափշտակությամբ։ Երբ ես եղա նրա մոտ՝ Շուշենսկոյե գյուղում, առավոտները նա միշտ առաջինն էր վեր կենում և սկսում ցնցել ինձ։

— Վեր կաց, քնկո՛տ։

Լենինը լվացվում էր շատ սառը ջրով, ամեն օր լիցքային վարժություններ անում։ Նախաճաշելուց հետո նա նստում էր աշխատելու։ Վլադիմիր Իլյիչն ամեն ինչում սիրում էր մաքրություն և կարգ ու կանոն։ Նրա սենյակը հավաքված էր լինում շատ մաքուր. յուրաքանչյուր իր դրված էր լինում համապատասխան տեղը։ Նա միշտ հագնվում էր կոկիկ, նույնիսկ տանը, նրան չէիր տեսնի անփույթ հագնված։ Հապա ինչպիսի՜ իդեալական կարգ ու կանոն կար նրա սեղանին։ Ամեն ինչ դրված էր իր տեղը, ոչ մի բան փնտրելու հարկ չէր լինում։

Լենինն աշխատում էր արտակարգ կենտրոնացած. միանգամից լծվում էր աշխատանքի։ Երևում էր, որ աշխատանքը նրան հաճույք է պատճառում։ Վլադիմիր Իլյիչը գրում էր պարզ ձեռագրով և ապշեցուցիչ արագությամբ։ Գրքերից հանած քաղվածքների ու նշումների թղթերը նրա մոտ մեծ չափերի էին հասնում։ Միայն նրա համար, որպեսզի գրի «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» աշխատությունը, նա կարդացել է ավելի քան վեց հարյուր գիրք։ Նա հատուկ ուշադրություն էր նվիրում վիճակագրական ժողովածուներին։ Այդ ժողովածուներից նա թվեր էր արտագրում, գումարում, համեմատում, ապա նորից ստուգում։ Թվական տվյալներից՝ «ճշգրիտ և անվիճելի փաստերից» նա ավեց երկրի դրության իսկական պատկերը։

Երբեմն նա հանկարծ մի կողմ էր դնում գիրքը և սկսում էր անցուդարձ անել սենյակում, մտածում կարդացածի մասին, հետո նորից նստում և խորանում ընթերցանության մեջ։ Նա սիրում էր քայլելիս մտածել իր մտքերը, ման գալիս հաճախ նա մեզ հետ քննարկում էր այն, ինչի մասին պատրաստվում էր գրել։ Իսկ երբ գրում էր, երբեմն նա գրածը կարդում էր բարձրաձայն։

— Ամեն ինչ հասկանալի՞ է,— հարցնում էր նա։

Եվ եթե ինչ-որ բան մեզ համար վիճելի էր կամ մութ, նա ուղղում էր գրածը, հասնելով մտքի պարզության և լեզվի հստակության։

Վլադիմիր Իլյիչը սիրում էր բառարաններ և հաճախ օգտվում էր նրանցից։ Երբ նրա մոտ մենք գործածում էինք ինչ-որ բառ, որի արտասանությունը կամ իմաստը վիճելի էր թվում Վլադիմիր Իլյիչին, նա ասում էր.

— Դուք որտեղի՞ց եք վերցրել այդ բառը։ Դուք ճի՞շտ եք օգտագործում այն։ Տեսնենք ի՞նչ են ասում բառարանները։

Եվ նա գրադարակից դուրս էր քաշում բառարանը։

Մի անգամ ես ու Ստարկովը Վլադիմիր Իլյիչին ուղարկեցինք գերմաներենից կատարած մեր մի թարգմանությունը, որպեսզի նա հայտներ իր կարծիքը։ Վլադիմիր Իլյիչը մեզ վերադարձրեց ձեռագիրը բազմաթիվ ուղղումներով ու ընդգծումներով։ Դա մեզ համար շատ ուսանելի դաս էր, թե ինչպես պետք է խնամքով աշխատել յուրաքանչյուր նախադասության, յուրաքանչյուր բառի վրա։

Ոչ մի բանում՝ ո՛չ աշխատանքում, ո՛չ կյանքում Լենինն անփութություն տանել չէր կարող։

## ԻՆՉՊԵՍ ԲՈԼՈՐԸ



լադիմիր Իլյիչը համեստ էր և հասարակ։ Նա երբեք ուրիշներին նեղություն չէր տալիս։ Ռևոլյուցիայից առաջ Պետերբուրգում նա մի անգամ հիվանդացավ թոքերի բորբոքումով։

— Խնդրում եմ միայն ոչինչ չասեք Մարիա Ալեքսանդրովնային, առանց այդ էլ մայրս շատ է տանջվել,— ասում էր նա։

Նա պառկած էր անշարժ, ամբողջովին փաթաթված վերմակներով։ Ցավալի էր նայել նրա նիհարած դեմքին։ Երբեմն իր անկողնու մոտ մարդ տեսնելով, Իլյիչը սթափվում էր և ասում.

— Ինչո՞ւ եք դուք հերթապահում այստեղ։ Խնդրում եմ գնացեք ձեր գործին։ Ոչինչ, ես ինքս...

Սովի ծանր տարիներին Վլադիմիր Իլյիչին հաճախ նվերներ էին ուղարկում։ Երբեմն դրանք բերում էին գյուղական պատվիրակները։

— Գիտեք ինչ, հրաժարվելն անհարմար է,— ամոթխած ժպիտով ասում էր նա,— որտանից են ուղարկում, եթե վերադարձնեմ կնեղանան, կվիրավորվեն։

Վլադիմիր Իլյիչը ստացած ծանրոցները սովորաբար ուղարկում էր մանկատները, կամ հյուրասիրում էր ընկերներին։

— Քաղցր թեյ խմեք, ձեզ օգտակար է,— ասաց ինձ, երբ ծանրոց էր ստացել Ուկրաինայից։

— Իսկ դուք ինչո՞ւ եք կծովի թեյ խմում, շաքար գցեք բաժակի մեջ,— ասացի ես նրան։

— Ո՛չ, ո՛չ, ես այսպես եմ սովորել,— պատասխանեց Լենինը։

Բայց, իհարկե, պատճառը դա չէր. պարզապես նա ուզում էր ապրել այնպես, ինչպես բոլորն էին ապրում այդ ծանր օրերին։

Վլադիմիր Իլյիչը շատ էր սիրում շախմատ խաղալ, սիրում ու հասկանում էր երաժշտությունը, ինչպես Ուլյանովների ընտանիքի բոլոր անդամները։ Բայց ռևոլյուցիայից հետո, երբ Լենինն աշխատում էր առանձին լարվածությամբ, նա իրեն զրկեց այդ բավականություններից։

— Չեմ կարող, երաժշտությունը չափազանց ազդում է վրաս, շախմատը նույնպես,— ասում էր նա։

Նա միշտ էլ տարված էր աշխատանքով։ Իր նկատմամբ Վլադիմիր Իլյիչը միանգամայն անխնա էր։ Լարված մտավոր աշխատանքից նա տառապում էր անքնությամբ։ Գիշերը քնելուց առաջ նա շրջագայում էր, որպեսզի կարողանա քնել։ Բայց դա էլ չէր օգնում։ Առավոտը նա տանից դուրս էր գալիս բոլորովին հոգնած ու տանջված։

Հաճախ Վլադիմիր Իլյիչին ես ասում էի, որ հանգստանա, խնայի իրեն, որ այդպես աշխատելով կկործանի իրեն։

— Բայց մի՞թե մեր գործը դրան չարժե,— պատասխանում էր Լենինը։

## ԵՐԿՐԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ



անր էր մեր երկրի դրությունը 1920 թվականի սկզբին։ Մեզ մոտ դեռևս չէր վերջացել քաղաքացիական պատերազմը, չէին աշխատում գործարաններն ու ֆաբրիկաները, կանգ էին առել գնացքները, սննդամթերքը չէր բավարարում. երկրում սով էր։

Եվ ահա այդ դժվարին օրերին Վլադիմիր Իլյիչը կանչեց մեզ՝ ռուս գիտնականներին ու ինժեներներին և հանձնարարեց կազմել Ռուսաստանի էլեկտրիֆիկացման պետական միասնական պլանը։ Էլեկտրականության հզոր ուժը պետք է օգներ մեզ վերակառուցելու մեր ամբողջ տնտեսությունը և մեր երկրում սոցիալիզմ կառուցելու։ Այս պլանը Վլադիմիր Իլյիչը հետագայում համարեց մեր պարտիայի երկրորդ ծրագիրը։

Շատերին Վլադիմիր Իլյիչի խիզախ պլանը թվում էր անչափ հանդուգն, անիրագործելի երազ։ Անգլիական գրող Ուելսը գալով Ռուսաստան ԳՕԷԼՌՕ-ի պլանի մասին զրուցեց Վլադիմիր Իլյիչի հետ։ Նա համոզված էր, որ էլեկտրիֆիկացումը հնարավոր է այնպիսի երկրում, ինչպիսին է Անգլիան, իսկ պատերազմի հետևանքով քայքայված Ռուսաստանում՝ դա ֆանտազիա է։

Ե՛վ որպես ԳՕԷԼՌՕ-ի պլանը կազմող

հանձնաժողովի նախագահ, և՛ որպես Պետպլանի նախագահ ես հաճախ էի գնում Կրեմլ՝ Լենինի մոտ և խորհրդակցում նրա հետ էլեկտրիֆիկացիայի գործերի մասին։

Մենք Լենինի մոտ գնում էինք հոգեկան անսովոր ոգևորությամբ։ Վլադիմիր Իլյիչի ներկայությունը ստիպում էր, որ մարդու ուղեղն աշխատի ավելի լարված։ Պատահել է, որ գնում ես նրա մոտ, և ինքդ էլ չես նկատում, թե ինչպես ձգտում ես ինքդ լուծել դժվարին հարցերը, որպեսզի Վլադիմիր Իլյիչից չխլես ավելորդ ժամանակ։ Վլադիմիր Իլյիչը կարող էր զարմանալի ուշադրությամբ լսել մարդկանց։ Նա օժտված էր հատուկ շնորհքով. բառի կեսից ըմբռնում էր զրուցակից մարդու միտքը և առանց ընդհատելու նրան ուղղություն էր տալիս, նրա վզին չփաթաթելով իր կարծիքը։ Ամենադժվար, օրինակ, տեխնիկայի հարցերում, նա կողմնորոշվում էր զարմանալի արագությամբ։ Ես նույնիսկ կատակով ասում էի, որ տեխնիկան շատ բան է կորցրել, երբ նա փոքր հասակում ուսումնասիրել է իրավաբանությունը։

Այն ամենը, ինչ կապված էր գիտության հարցերի հետ, շատ էր հետաքրքրում Լենինին։

ԳՕԷԼՌՕ-ի պլանում Լենինը մտցրեց բոլոր մանրամասնությունները, թե ինչպես օգտագործել տորֆային հանքերը, որտեղ ավելի լավ է կառուցել էլեկտրակայան, առաջին հերթին քանի մարզ է հնարավոր լուսավորել, քանի էլեկտրալամպ կարող ենք պատրաստել, ինչքան էլեկտրասյուն, մեկուսիչներ և հաղորդալար է հարկավոր։

Վլադիմիր Իլյիչի ցուցումով գավառներում ու նահանգներում անկետաներ տարածվեցին՝ էլեկտրիֆիկացմանը վերաբերող մանրամասն հարցերով։ Վլադիմիր Իլյիչը ձգտում էր երկրի էլեկտրիֆիկացման պլանի քննարկման ու կատարման գործում մասնակից դարձնել ամբողջ ժողովրդին։ Նա ասում էր, որ հարկավոր է ժողովրդին ցույց տալ էլեկտրիֆիկացման անհրաժեշտությունն ու վիթխարի շահավետությունը և բանվորներին ու գյուղացիներին ներգրավել այդ մեծ ծրագրի կատարման գործի մեջ։

Վլադիմիր Իլյիչի մեջ կար խոր և անսասան հավատ դեպի ժողովուրդը, նրա հզոր ստեղծագործական ուժը։ Եվ նա, ինչպես ոչ ոք, կարող էր կյանքի կոչել այդ ուժերը, ուղղություն տալ նրանց։ Նա ժողովրդին նվիրված առաջնորդ էր։

Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

## ՆՈՐ ՏԱՐԻՆ

*Ա. ՓՈՂՈՍՅԱՆ*

Հենց որ օրը լուսացավ,
Ձմեռ պապին արթնացավ,
Այսպես դիմեց տատիկին,
Ձեռքը՝ ծերմակ մորուքին.
— Վա՛յ, կուշանամ, ա՛յ պապ,
Օրը եկավ, ճաշ դառավ,
Դու մրգեր բեր ու նստիր՝
Տոպրակները պատրաստիր,
Ես էլ անտառ մտնեմ,
Տոնածառեր կտրատեմ,
Եվ ուղարկեմ բոլորին,
Դպրոցներին, տներին:

Այսպես ասաց հեռացավ,
Անտառի մեջ խորացավ,
Եղևնիներ ուղարկեց
Բալիկներին փոքր ու մեծ:
Հետո կտրեց մի մեծ ծառ,
Շինեց ճոխ տոնածառ,
Իր հաղթական ուսն առավ,
Դեպի քաղաք նա տարավ...
Եվ շատ շուտով նրա հետ
Բարիքներով բուրավետ,
Այցի եկավ բոլորին
Հայրենիքի նոր տարին:

# Լ Ե Ն Ի Ն Ը

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Անունով Գորիկ,
Մի տղա փոքրիկ,
Գնդակը առավ,
Տնից դուրս թռավ,
Ու վազեց այգի, իրենց բակին մոտ,
Դեպի ծաղիկներ, դեպի մաքուր օդ:
Նոր էր ներս մտել,
Խաղի տեղ գտել,
Երբ հանկարծ տեսավ, որ նստարանին
Նստած է մի մարդ՝
Ճիշտ Լենին պապին:
Տղան շփոթվեց,
Ինչ-որ թոթովեց.
Ապա զիլ ճիչով,
Մարգերի միջով,

Կանչում են շտապ... դու գնա՝ խաղա:
Ինչ-որ բան ուզեց հարցնել տղան,
Բայց պարզած մնաց ձեռքը մանկական.
Խոսքը բերանին նայեց այդ մարդուն,
Ապա վազելով սլացավ նա տուն,
Հեինն իրենց տան բակը մտավ,
Երեխաներին հավաքված գտավ.
Ամեն ինչ պատմեց կցկտուր, արագ.
Նրանք խնդացին.— Ա՛յ քեզ գյուտարա՜ր...
— Վաղուց է մեռել մեծ Լենին պապին...
— Իսկ սա ասում է՝ եկել է այգին...
Չէր հավատում մեր Գորիկին ոչ ոք.
Բայց ուզում էին տեսնել, թե իրոք,
Այդ ո՞վ է եղել,
Այդ ո՞վ է եկել:



Դեպի ժպտացող Լենինը նետվեց,
Լեզուն կապ ընկած մոտեցավ, կանգնեց...
— Լենին... պապի՞ն ես...
Վա՞յ... այդ... այդ ինչպե՞ս...
Այգու մի կողմից, հենց այդ միջոցին,
Եկան, կանչեցին Լենին պապիկին:
— Դե՛, գնացի ես, իմ փոքրի՛կ տղա.

Մեկն ասաց՝— Գնա՛նք:
Մյուսն ասաց՝— Մնանք:
Մեկը, թե՝— Այ սո՛ւտ...
Մյուսը, թե՛— Շո՛ւտ, շո՛ւտ...
Վերջը թողեցին խաղ, երգ ու կատակ,
Հասան Գորիկի ասած ծառի տակ,
Մեկ էլ, իսկապես,



Հրաշք էր ասես.
Լենինը իջավ մի լայն հարթակից,
Տղերքին ժպտաց հոնքերի տակից,
Ինչ-որ խոսք ասաց իր ընկերներին,
Որ նրա շուրջը աղմկում էին,
Եկավ մի թեթև վերարկու վրան,
Ծանոթին տեսավ,
Գիրկն առավ նրան...
Կրակի կտոր
Փոքրերը բոլոր,
Հենց նրան տեսան, կանչեցին՝— Լե՛նին...

Ու դեմ վազեցին ուրախ խնդացին:
— Բարև, փոքրիկնե՛ր,— Լենինը ասաց:
— Բարև՜...— խմբովին գոչեցին սրտանց:
— Միշտ հիշում եք չէ՞, Լենին պապիկին:
— Միշտ, մի՛շտ հիշում ենք պապին
թանկագին:
Գորկին մինչ այդ նայում էր պապին,
Նայում մորուքին, շոշափում կեպին...
— Կինո-նկար ենք մենք հիմա հանում.
Լենինի դերն եմ ես այստեղ տանում,—
Ասաց դերասանն ապշած Գորկին,
Վերև թռցրեց, ցած դրեց կրկին...
Երեխաները շատ ափսոսացին,
Գորկին, սակայն, վատ խոսք չասացին:
Տխրեցին միայն,
Տխրեցին անձայն...
— Դե՛, դե՛, մի՛ տխրեք,
Մի՛ տխրեք, տղե՜րք...
Հենց դուք եք այսօր Լենինյան սերունդ.
Նրա խոսքերն եք պատվով կատարում:
Սիրեցեք նրան, սովորեցեք լավ,
Եվ չի մահանա Լենինը բնավ:
Ասաց, հրաժեշտ տվեց բոլորին,
Գնաց, լույս տալով կարծես այդ օրին...
Երեխաները դանդաղ քայլեցին,
Ամեն մի քայլին ետ-ետ նայեցին,
Եվ գնացին տուն
Նորից ժիր, խնդուն,
Առած մի նոր ուժ,
Կինոյի մասին վիճելով աշխույժ,
Հիշելով կյանքը Լենինի անմահ
Եվ դերասանին Լենինի նման:

# ԲԱԶԵԻԿԸ

ՎԻԼԻՍ ԼԱՑԻՍ
(Լատիշ գրող)

(Անցյալից)

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

*Բազեիկը թռչուն չէ, այլ՝ սովորական մի երեխա, արագաշարժ, փոքրիկ ոտքերով, կեղտոտված դեմքով և փափուկ, վուշի նման փայլուն, շեկլիկ մազերով: Գարունը լրացավ նրա հինգ տարին, և սա արդեն բավական նշանակալից մի հասակ էր: Նրա իսկական անունը Յանիս էր, և ոչ թե Բազեիկ. Հայրն էր նրան այդպես կանչում:*

*Ծովից տուն վերադառնալիս, նա հանում էր ձկնորսական ծանր կոշիկները, ամեն անգամ որդուն բոլորաչափ նստեցնում իր ծընկներին, որոնցից ձկան և ջրիմուռի հոտ էր գալիս: Նույն հոտը գալիս էր նաև նրա ձեռքերից ու կոշիկներից, ուռկանից, ձկնորսական սև նավակից և նրանց սենյակից:*

*— Հապա, իմ Բազեի՛կ, ինչո՞վ ես զբաղ-*



— Ինչո՞վ ես զբաղվել այսօր:

վել այսօր,— հարցնում էր հայրը՝ օրորելով նրան ծնկների վրա։

Երբեմն էլ հայրը կատակով հարց էր տալիս, թե՝ ո՞ւմ Բաղեիկն է նա։ Այդ ժամանակ Յանիսը ներքին հուզմունքով դեմքը փարում էր հոր կրծքին և կամացուկ շշնջում.

— Հայրիկի Բաղեիկը...

Եվ երկուսն էլ ուրախ ծիծաղում էին։ Ժպտում էր հայրը, ձեռքերով հարդարում Բաղեիկի մազերը և իջեցնում նրան հատակին։

Զարմանալի բան. այդ մեծ, ծովային աղի ջրից կոշտացած ձեռքն ինչպե՞ս էր կարողանում թեթև շոյել։ Երբ Բաղեիկի մազերը խճճվում էին, այդ անճոռնի, ուռած մատները ուղղում էին, այնպես զգույշ, որ բնավ ցավ չէին պատճառում։

Մի խոսքով, նրանք ապրում էին սիրով։ Այո, և դա հասկանալի էր։ Չէ՞ որ նրանք երկուսով էին ծովափնյա փոքրիկ խրճիթում։ Անցյալում այստեղ կար և երրորդ անձը։ Դա Բաղեիկի մայրն էր։ Հայրը հիշում էր նրան, բայց Բաղեիկը մոռացել էր։ Նա նույնիսկ չէր հասկանում, թե արդյոք վա՞տ է կամ լավ, որ ինքը մայր չունի, երբ որ կա հայրը՝ մի իսկական ընկեր, որը օրորում է նրան ծնկների վրա, և երբեմն էլ շալակած տուն բերում ծովափից։ Նա շատ ուժեղ է. Բաղեիկը անհնում էր, թե ինչպես հայրը մենակ գնալի ծովն է հրում ձկնորսական ծանր նավակը։ Ուրիշները այդ չեն կարող անել։

Եթե հայրը երկար ժամանակով էր ծով գնում, որ հաճախ պատահում էր գարնանը, ապա Բաղեիկին տանում էր գյուղ՝ Աննա մորաքրոջ մոտ, որտեղ նա պարտավոր էր մնալ և գիշերել։ Այնտեղ ուրիշ տղաներ ու աղջիկներ էլ կային։ Աննա մորաքույրը միշտ լավ էր վերաբերվում դեպի Բաղեիկը. թերևս ավելի լավ, քան մյուսներին։ Բայց Բաղեիկին իրենց տունն ավելի էր դուր գալիս. թեև նա տանը միայն մի խաղընկեր ուներ՝ մոխրագույն կատու Մինկան։ Բայց ի՞նչ զվարճություն էր։ Բավական է, որ Բաղեիկը թելին կապեր փայտի մի կտոր և վազ տար սենյակում, որպեսզի փայտիկը շարժվեր հատակին։ Ինչպե՞ս էր Մինկան ցատկոտում, ինչպե՞ս էր դարանամուտ լինում անկյունում, հսկում փայտիկին, ինչպե՞ս էին փայլատակում նրա կանաչ աչքերը. իսկ պոչը բարկությամբ հատակն էր թակում, մինչև որ վերջապես, կծկվելով, Մինկան ահագին ոստյուն էր կատարում։ Հիմա՞ր Մինկա. նա դուցե մտածում էր, որ փայտիկը կենդանի է։ Բայց ընդհանրապես Մինկան բարի կատու էր, ուրախ և համբերատար։

Երեկոները, երբ հայրը պետք է վերադառնար ծովից, Մինկան Բաղեիկի հետ գնում էր ծովափ և սպասում ձկնորսներին։ Իսկ երբ ձկնորսները ափ էին դուրս գալիս, նա մռմռալով կամաց պտտվում էր հայրիկի շուրջը՝ մեջքը աղեղնաձև, պոչը վեր ցցած։ Նա արդեն գիտեր, որ այդ մարդը երբեք դատարկաձեռն չի վերադառնա և իր համար միշտ որևէ ձուկ բերած կլինի։ Կյանքը լավ էր և ուրախ։ Ավելի ուրախ էր լինում, երբ ամառային արևոտ օրերին չորացած ուռկաններն էին կարկատում ծովափին։ Բաղեիկն ավազից տնակներ էր կառուցում, իսկ հայրը ճարպկորեն գործածում էր ասեղը՝ ուռկանի քանդված օղակները հավաքելու համար։ Երբեմն էլ նա մի կողմ էր դնում ասեղը և նայում ավազի վրա՝ Բաղեիկի կողքին։

— Հապա, իմ Բաղեի՛կ, այդ ի՞նչ ես շի-

նում դու,— հարցնում էր նա։ Այդ ժամանակ Բազեիկը պատմում էր նրան, որ ավազի փոքրիկ բլուրը իր տունն է, իսկ մեծը՝ խանութը։ Բայց նա Մինկայի համար էլ տուն պիտի շինի։

Հաճախ հայրը մտածկոտ նայում էր դեպի ծովը և նստեցնելով Բազեիկին իր կողքին, ցույց էր տալիս հեռուն, ուր ջրային տարածությունը ձուլվում էր երկնակամարի հետ։

— Իսկ դու գիտե՞ս, ինչ կա այնտեղ՝ հորիզոնից այն կողմ։— Ոչ, Բազեիկն այդ չգիտեր, բայց ուզում է գիտենալ։ Այդ ժամանակ հայրը գրկում էր նրան և մեղմությամբ ու գուրգուրանքով կրծքին սեղմելով ասում.



Բազեիկը... դիտում էր ծովը։

— Կգա ժամանակ, երբ իմ Բազեիկի թևերը կաճեն։ Նա կթռչի այնտեղ և կգիտի, ապա կվերադառնա ու կպատմի հայրիկին իր տեսածների մասին...

Ահա այսպես էին ապրում նրանք։ Թերևս ուրիշներն ավելի լավ, ավելի ուրախ կյանք ունեին. գուցե և ընդհակառակը։ Բազեիկն այդ չգիտեր։ Նրա համար այսպես էլ լավ էր, և թվում է, թե հոր համար ևս, ինչպես և Մինկայի... երեքի համար էլ։

...Վրա հասավ աշունը։ Ժամանակ առ ժամանակ ուժեղ քամի էր փչում, և ալիքները նետվում էին դեպի ծովափ։ Մարդիկ սախլված քարշ էին տալիս նավակները ավազաթմբից ավելի հեռու։ Բազեիկն այլևս չէր կարող վազվզել ծովափին և գույնզգույն խճաքարեր հավաքել. իսկ Մինկան, աշխարհում ամեն բանից ավելի վախենալով, որ չլինի թե իր սպիտակ տոտիկները թրջվեն, բարձր ավազակույտից այն կողմը չէր անցնում, ծովին չէր մոտենում։ Այդպիսի օրերին, հայրը երբեք ծով չէր գնում։

Բայց ահա մի օր էլ մինչև կեսօր եղանակը հանգիստ էր, երկինքը պարզ. միայն հեռավոր հորիզոնում տարածվում էին ամպերը։ Հայրիկի մոտ եկավ ընկերը։ Նրանք խոսում էին այն մասին, որ պետք է երեկվա չորացած ուռկանները ծովը գցել։ Անցյալ գիշեր ուրիշ ձկնորսներ լավ որս էին ունեցել։ Նրանք ցցերից վերցրին ուռկանները և դարսեցին նավակի մեջ։ Մեկնումից առաջ հայրիկը Բազեիկին տուն տարավ, մի մեծ չերտ հացի վրա ճարպ քսեց և դրեց խոհանոցի փոքրիկ պահարանում։

— Երբ ուտել ուզենաս, պահարանը բաց արա, հացը վերցրու և կեր,— ասաց նա,— իսկ այժմ խաղա Մինկայի հետ. ծովափ չգնաս։ Ես շուտ կվերադառնամ։

Հետո նա գնաց։ Բազեիկը պատուհանից տեսավ, թե ինչպես նավակը ծով դուրս եկավ, հետզհետե փոքրացավ, և բոլորովին անհետացավ։ Իզուր էր այլևս նայելը։ Բազեիկը փնտրեց փայտիկով թոկը և սկսեց խաղալ Մինկայի հետ։

Բավական երկար զբաղվեցին նրանք սենյակում։ Երբ երկուսն էլ հոգնեցին, Բազեիկը բարձրացավ աթոռի վրա և խոհանոցի պատուհանից նայեց դեպի ծովը. կարո՞ղ է պատահել, որ արդեն հայրը մոտենում է ափին։ Բայց նավակներ չէին երևում։ Ծովն սկսեց մթագնել. վիթխարի ալիքները զարնվում էին ափերին։ Ծովափնյա ավազաթումբը շփշփոցով և սուլոցով տարուբերվում էր։ Հսկա ծառերն այնպես էին ծռվում դեպի գետին, որ կարծես անտեսանելի մի ձեռք ճնշում էր նրանց։ Բազեիկը գիտեր, որ դա լավ չէ. երբ սոճիններն այդպես ճոճվում են, ուրեմն փոթորիկ կլինի, ահեղ եղանակ, ինչպես ասում էր հայրը։ Ձկնորսները պետք է մնան ափին։ Նա գիտեր նույնպես, որ այդպիսի

եղանակին ծով դուրս եկած ձկնորսները, շտապում են ափ վերադառնալ։ Նշանակում է՝ հայրիկը շուտով տանը պետք է լինի։ Բայց նա չէր վերադառնում։

Դրսում արդեն մթնեց. հորիզոնը չէր կարելի տարբերել ծովի ջրից։ Քամին ավելի ուժեղ էր ոռնում, այնպես, որ սկսեց նույնիսկ խրճիթի տանիքը դողդողալ։

Բաղեիկը գլխարկը քաշեց գլխին և շալկով, առանց հնամաշ վերարկուի, դուրս եկավ։ Կատուն, հրավերի չսպասելով, ընկերացավ նրան։

Նրանք առաջ էին շարժվում դանդաղորեն, որովհետև քամին փչում էր ուղիղ դիմացից և քիչ էր մնում գետին տապալեր նրանց։ Ոչ, հայրիկի նավակը ծովափին չէր. չէր երևում նաև ծովում։ Աղմկահույզ ջրային տարածությունն այնպես խավար էր, որ հնարավոր չէր հորիզոնը նշմարել։ Բայց չէ՞ որ հայրիկը պետք է շուտով վերադառնա։ Ի՞նչ գործ ունի նա ծովում այդքան երկար։ Եթե նա հեռու գնալու լիներ ձկնորսության, պետք է, որ Բաղեիկին տաներ մորաքույր Աննայի մոտ։ Բայց նա այդ չէր արել. նշանակում է կվերադառնա... հենց այսօր երեկոյան։

Բաղեիկը նստեց ուռկանների համար դըրված փոքրիկ նստարանի վրա։ Արևը մայր մտավ։ Տեղ-տեղ, ամպերի միջև առկայծեցին դժգույն աստղերը։ Սկսեց վաղ աշնանային գիշերը, իսկ Բաղեիկը երկար ժամանակ նստած դիտում էր ձյութի նման սև ծովը։ Նա ուզում էր իմանալ, թե արդյոք փոթորիկի դադարի միջոցին, չի՞ լսվում թիակների բախում. բայց դա անկարելի էր, քանի որ քամին ոռնում էր շատ ուժգին։ Բաղեիկը չէր ուզում տուն վերադառնալ, այնտեղ հիմա մութ է, և մեկը չկա, որ լույսը վառի։

Կամացուկ, կարծես ինչ-որ բան հարցնելով, մլավեց Մինկան՝ կողերը քսելով Բաղեիկի ոտքերին։ Մլավեց երկրորդ անգամ և պատասխանի չսպասելով՝ առաջ շարժվեց դեպի տուն։ Սպասելը ձանձրացրեց Մինկային։ Թող գնա. հենց դրա համար էլ ձուկ չի ստանա։ Բայց Բաղեիկը պիտի սպասի, մինչև հայրը վերադառնա։ Նա կվերցնի նրան ձեռքերի վրա և կտանի տուն։ Միայն ինչո՞ւ նա մինչև հիմա չի գալիս, գուցե նա գնացել է հեռու, հորիզոնի հետևը տեսնելու համար, թե ինչ կա այնտեղ։ Ահա այդ ժամանակ նա կկարողանա պատմել շատ հրաշալի բաներ։ Բաղեիկն էլ էր ցանկանում տեսնել հորիզոնի այն կողմը, բայց նա դեռ փոքր է, պետք է սպասի, մինչև թևերն աճեն։

Քամին սուլում է և ոռնում։ Մթության մեջ աղմկում է փոթորկահույզ ծովը։ Ծովափին կանգնած է մութ և ցուրտ խրճիթը։ Ոչ ոք չի գալիս Բաղեիկին տուն կանչելու. և չկա մեկը, որ կանչի։ Նա նստում է, նստում. օրորվում է նստարանի վրա մրսած ոտքերով և նայում է ծովի կողմը։ Բայց ոչ ոք չկա այնտեղ։ Ամպերի մեջ հայտնվեց արծաթագույն լուսինը, որի դժգույն փայլը սահեց ջրի մակերեսով։ Եվ հիմա էլ, այնպես սև է ծովը, որ երբեք այդպես չէր եղել։ Իսկ ծովափին, առաջվա պես, նստած է միայնակ երեխան և սպասում է։ Նրա աչքերը լարված ուշադրությամբ դիտում են գիշերվա կույր մթությունը։ Նա դեռ սպասում է։ Սպասում է փոքրիկ Բաղեիկը... Հայրիկի Բաղեիկը։

Թարգմ. Ա. ԱՐՈՅԱՆ




Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Ծերացել էր հին տարին։ Ծերացել ու սպասում էր նոր տարվան...*

*Ասում են, որ ճիշտ այն պահին, երբ ժամացույցներն իրենց տասներկու հարվածներն են խփում, մի հեռավոր ձյունոտ բլրի վրա իրար են հանդիպում հին ու նոր տարիները...*

*— Տատի՛, իսկ ո՞վ է տեսել նրանց հանդիպումը,— հարցրեց Ռուբիկի փոքր քույրը։*

*Տատը Սուսաննայի այս հարցի վրա ժպտաց և չգիտես ինչու, նայելով Ռուբիկին, պատասխանեց.*

*— Հին ու նոր տարիների հանդիպումը կտեսնի նա, ով ազնիվ է, աշխատասեր, ով չի խաբում և հարգում է իրենից մեծերին։ Իսկ նա, ով ծույլ է, անկարգապահ, երազում անգամ չի տեսնի այդ հանդիպումը...*

*Տատը դեռ չէր ավարտել խոսքը, երբ մյուս սենյակում, ուր մեծերն էին, մի պահ քար լռություն տիրեց։ Լսվեց ժամացույցի հանդիսավոր զարկերի ձայնը։ Հեռանում էր հին տարին...*

***

*Ուշ էր արդեն, երբ Ռուբիկն անկողին մըտավ։ Նա հոգնել էր և անմիջապես փակեց աչքերը, քնեց... քնեց ու երազում տեսավ...*

*Ահա նա քայլում է մի ընդարձակ դաշտով։ Գիշեր է, պարզ, լուսնկա գիշեր։ Սառը քամին փչում է կատաղորեն։ Հազարավոր աչքերի նման փայլփլում են աղամանդե աստղերը, իսկ ոտքերի տակ ճռճռում է ձյունը։ Գնում է նա ու մտածում, որ շուտով կհասնի այնտեղ, այն ձյունոտ բլրին, ուր հանդիպելու են հին ու նոր տարիները. իսկ քամին, ձյունախառն քամին ոռնում է ու ոռնում ո՜ւ... ո՜ւ...*

*Այն ի՜նչ զանգակների ձայներ են լսվում։ Ահա հեռվից, մրրիկի նման արշավում են երկու փրփրաբաշ նժույգներ, ինչպես հեքիաթներում։ Նրանք մի հսկա սահնակ են քաշում։ Սահնակում ինչ-որ մարդիկ են նստած։ Այ, քեզ բա՜ն, իրենց դասարանի տղաներն ու աղջիկներն են՝ Անահիտը, Էմման, Գագիկը...*

*— Էհե՜յ... այդ ո՞ւր եք գնում...*

*Սահնակը կանգ առավ։ Առջևի մասում, երկար մորուքը ձեռքին նստած է ծերունի կառապանը։*

*Սահնակում նստածները հանկարծ նկատեցին ու սկսեցին կանչել իրեն։ Նա փորձեց պատասխանել նրանց, բայց ձայնը դուրս չեկավ։ Նա հազիվ հավաքեց ուժերը և այնպես կանչեց, որ թվաց, թե այդ իր ձայնը չի...*

*— Այդ ո՞ւր եք շտապում...*

*— Մի՞թե չգիտես, որ այնտեղ, այն հեռավոր բլրի վրա այսօր հանդիպելու են հին ու նոր տարիները...*

*Ռուբիկն էլ է ցանկանում գնալ այնտեղ, ավելի լավ կլինի՝ սահնակով։ Չէ՞ որ ճանապարհը շատ երկար է։*

*— Ինձ էլ չե՞ք տանի։*

*Սահնակում նստածները մոտեցույց են անում ծերունի կառապանին։ Ռուբիկն անհամարձակ քայլերով մոտենում է նրան։*

*— Պապի՛, ինձ էլ տար քո սահնակով։*

*— Նստի՛ր, ա՛յ, այն ծայրում տեղ կա. բայց ամուր բռնիր, չընկնես...*

*Ահա սլանում են նրանք հարթ ու սպիտակ դաշտով։ Շուրջը ձյուն է ու ձյուն։*

*Այնքան արագ է թռչում սահնակը, որ*

նրան թվում է՝ ոչ թե ձյան վրայով, այլ օդով են սլանում...

Հեռվում ինչ-որ ձայներ են լսվում, ասես երգում են։ Սահնակում նստածները ոտքի են կանգնում։

— Այս ի՞նչ է,— հարցնում է նա կողքին նստած անծանոթ աղջկան։ Դե, ի՞նչ անծանոթ... դա Անահիտն է։

— Մի՞թե չգիտես... ապա նայիր։

Ասես երազ լինի։ Ձյունածածկ հարթ դաշտում, ուր մի թուփ անգամ չկար, հսկա մի եղևնի է կանգնած, իսկ վրան որքա՜ն գույնզգույն խաղալիքներ կան։

Սահնակը կանգ է առնում։ Եղևնու շուրջը բազմաթիվ երեխաներ են հավաքվել։ Նրանք շրջան բռնած երգում են ու պարում։ Սահնակում նստածները ուրախ բացականչություններով միանում են նրանց։ Ահա նա էլ է մոտենում։

— Թույլ տուր բռնել քո ձեռքը,— խնդրում է նա մի կապուտաչյա աղջկա, որի գլխին փաթաթված շալի տակից դուրս էին ցցվել նրա շիկավուն հյուսքերը։



....ճնեց ու նրազում տեսավ...

Աղջիկը բարկացած նայում է նրան։

— Դու ինձ չե՞ս հիշում,— վերջապես խոսում է աղջիկը։

— Ոչ, չեմ հիշում։

— Ապա մի լավ նայիր։

— Ա՜, իսկ ես քիչ էր մնում չհիշեի,— բացականչում է նա,— դու մեր բակի Մառլենան ես, Գեղամի քույրը։

Աղջիկը սառը ժպտում է։

— Ես իսկի էլ ձեր բակից չեմ, ու Մառլենա չէ իմ անունը։ Ես այն աղջիկն եմ, որի ակնոցին հարվածեցիր սառցակալած ձնագնդիկով։ Երբ ես ճչացի ու վայր ընկա, դու փախար։ Բայց գիտե՞ս, թե ինչ կատարվեց ինձ հետ։ Ականջիցս սկսեց արյուն հոսել։ Ինձ հիվանդանոց տարան։ Ես, ճիշտ է, լավացա, բայց ցավը դեռ մնացել է. դրա համար էլ փաթաթել եմ շալով։

Այս ինչե՞ր են ծակծկում նրա ոտքերը։ Ասես ոչ թե ձյան վրա էր կանգնել, այլ ասեղների...

Ուրիշ ելք չկա, պետք է հեռանալ... բայց կապուտաչյա աղջիկը մտերմորեն բռնում է թևից։

— Դե, լա՜վ, ինչպես երևում է, դու այնքան էլ վատ տղա չես։ Պտտվիր մեզ հետ. ահա իմ ձեռքը. բայց տես, որ մյուս անգամ ոչ մեկին այդպիսի բան չանես... խոստանո՞ւմ ես։

— Խոստանում եմ,— հազիվ պատասխանում է նա։

Նրանք պտտվում են զարդարված եղևնու շուրջը, որի գունավոր լույսերի փայլը տարածվում է հեռու, հեռու։ Պարում են ու երգում զրնգուն ձայնով։ Այնպես լավ է միասին

երգելը... նա էլ է փորձում, բայց ձայնը դուրս չի գալիս. կարծես կոկորդը ամբողջովին սառցակալել է։

Հանկարծ, հրաշքի նման հսկա եղևնու հետևից հայտնվում է ոտից գլուխ ճերմակ հագած, երկար մորուքով մի ծերունի։

— Ձմեռ պապի՜, Ձմեռ պապի՜,— կանչում են բոլորը։

Ծերունին վայր է դնում ճամպրուկները և սկսում է այնտեղից բազմաթիվ գունավոր ստվարաթղթի արկղիկներ հանել։

«Նվերներ են» մտածում է Ռուբիկը։

Բոլորը հերթով մոտենում են։ Նրանցից յուրաքանչյուրը մի սիրուն արկղիկ է ստանում։

Վերջապես իր հերթն էլ է հասնում. բայց երբ մոտենում է ծերունուն, նկատում է, որ նա մորուք չունի։ Գլխին էլ մի սպիտակ գլխաշոր է կապել։



— Է՜. սա ի՞նչ նվեր է...

Երբ Ռուբիկը ձեռքը մեկնում է նվերը վերցնելու, համոզվում է, որ նա ոչ թե Ձմեռ պապի է, այլ՝ տատի։ Այո, այո. նույնիսկ դեմքը ծանոթ է թվում։ Դե, իհարկե, իրենց հարևան բակում ապրող Հերիքնազ տատին է։

— Այդ ես եմ, Հերիքնա՛զ տատի, չե՞ս ճանաչում,— ուրախությունից ճչում է նա։

Տատը հարդարում է գլխաշորի տակից դուրս եկած արծաթագույն մազերը, շտկում է ակնոցները և ուշադիր նայում։ Հանկարծ...

— Ա՜խ, այդ դու ես։ Այ-այ-այ-ա՜յ, ճանաչեցի, ինչպես չէ, ճանաչեցի։ Դեռ նվեր էլ ուզում ես ստանալ։ Ի՞նչ արած՝ ստացիր։ Ստացիր ու բաց արա արկղիկը։

Նա տատի խոսքերից ոչինչ չի հասկանում։ Վերցնում է կապտավուն արկղիկը և անհամբերությամբ բաց է անում։

«Այս ի՞նչ է,— զարմանում է նա,— սառցի կտորնե՞ր... ոչ, ոչ, սառցի կտորներ չեն, այլ ջարդված ապակու մանրուքներ...»։

— Է՜, սա ի՞նչ նվեր է, Հերիքնա՛զ տատի,— դժգոհ ասում է նա։

Տատը ժպտում է։

— Հը՜, ի՞նչ է, դու՞ չե՞ս։ Չէ, ինչպես տեսնում եմ, չես ուզում հիշել։ Ա՛յ, հիշիր, ամռանը, երբ Լևոնի հետ պարսատիկով ծառերի վրայի ճնճղուկներին էիք խփում։ Խնամելու փոխարեն, դուք ոչնչացնում էիք օգտակար թռչուններին։ Նրանցից մեկը պատահմամբ կանգնեց իմ լուսամուտի գոգին։ Դու էլ, հիշո՞ւմ ես, առանց մտածելու քաշեցիր պարսատիկի ձգանները, և քարը ուղիղ դիպավ լուսամուտի ապակուն։ Ապակին փշուր-փշուր եղավ։ Երբ ես դուրս եկա, դու արդեն փախել էիր։ Տեսնում ես, սիրելի՛ս, հենց այդ արկղիկում՝ քո փշրած ապակու կտորներն են։

Հանկարծ նա իր ուսի վրա ձեռքի ծանրություն է զգում։ Շրջվում է և ի՜նչ, նրա հետևում կանգնած է ընկեր Ստեփանյանը։ Ուսուցչուհու բարի և միշտ ժպտացող դեմքը, այս անգամ մռայլ է։

— Տեսնո՞ւմ ես, Ռուբի՛կ, թե ի՜նչ անկարգն ես եղել...

Կարծես եռացրած ջուր են լցնում Ռուբիկի վրա։ Նա փորձում է արդարանալ, որ այդ բոլորը վաղուց է եղել, որ նա այժմ այդպիսի բաներ չի անում, բայց երեխաները հանկարծ խառնվում են իրար, աղմուկ-աղաղակ են բարձրացնում։

Ձյունե անծայրածիր տարածության մեջ արձագանքելով, հնչում են զանգի տասներկու ղողանջները։ Այնքան բարձր են լսվում, որ կարծես աներևույթ մի ձեռք երկաթե հսկայական ձողով հարվածներ է տեղում արծաթագույն կիսալուսնին։

Այդ հանդիսավոր պահին, հեռվում երևվում է հսկա մի ծերունի, որի ալեխառն մորուքը ծածանվում է քամուց։ Նրա թևերի տակ ինչ-որ թղթապանակներ կան։ Ծերացած հին տարին է դա։ Հանկարծ մեկը կանչում է.

— Այնտեղ, այնտեղ նայեցե՛ք,— ահա նոր տարին էլ եկավ։

Այս ինչո՞ւ բոլորը տեսնում են, իսկ ինքը ոչ։ Որքան էլ ուշադիր նայում է, ոչինչ չի տեսնում, բացի հին տարուց, որը բարձրանում է ձյունոտ բլրակի լանջով։ Նա ստիպված դիմում է իր մոտ կանգնած տղային։

— Ո՞ւր է նոր տարին, ես ոչինչ չեմ տեսնում։

— Կո՞ւյր ես, ինչ է... նայի՛ր այն փոքրիկ աշխույժ տղային, տե՛ս, ձեռքերը մեկնած ինչպես է մոտենում հին տարուն։ Ահա իրար ձեռք են սեղմում. հին տարին հեռանում է։ Տե՛ս, ձեռքով է անում, իսկ նոր տարին գալիս է դեպի մեզ։

Նա մատներով շոշափում է աչքերը. ոչ, չի կուրացել։ Ասենք ինչպես կարող էր կուրացած լինել, երբ տեսնում է, թե հին տարին ինչպես է հրաժեշտ տալիս։ Ահա նա հեռացավ, իսկ նոր տարին... Ախր ինչո՞ւ նա չի տեսնում նոր տարուն։ Ոչ մի նոր տարի էլ չի երևում։

Հանկարծ բոլորը սկսեցին բացագանչել.

— Նոր տարի՜ն, շնորհավոր նոր տարի՜։



— Տե՛ս, ձեռքով է անում...

* * *

Ռուբիկը վեր թռավ քնից։ Տատը ձգում էր նրա վերմակից անընդհատ բացագանչելով.

— Նոր տարի՜, շնորհավոր նոր տարի՜։

— Տատի՛, դու տեսա՞ր նոր տարուն,— կես քուն, կես արթուն հարցրեց Ռուբիկը։

Տատը ծիծաղեց։

Ռուբիկը որոշեց պատմել նրան այն ամենը, ինչ տեսել էր երազում, բայց մտածելով, որ տատը շատ կծիծաղի իր վրա, ստիպված լռեց։ Լռեց ու մտածեց այն մասին, թե ինչու ինքը երազում չտեսավ հին ու նոր տարիների հանդիպումը, իսկ նոր տարին արդեն շրջում էր ամենուրեք։




Դեռ շատ հին ժամանակներից խիզախ մարդիկ փորձել են իմանալ հեռավոր, անծանոթ երկրի՝ Արկտիկայի գաղտնիքը։ «Աշխարհի բարձունքին», ինչպես մարդիկ կոչում էին Հյուսիսային բևեռը, շատ ու շատ հետախույզներ են փորձել հասնել, բայց նրանցից շատերի փորձերը՝ հասնել բևեռի սրտին, կյանքի գնով է հատուցվել։

Անցան շատ տարիներ... Մարդիկ որոշ տեղեկություններ իմացան այն երկրի մասին, որը գտնվում է երկրագնդի ամենահյուսիսային մասում։ Սակայն դրանք շատ քիչ բան տվեցին գիտությանը։ Ամերիկացի ճանապարհորդ Ռոբերտ Պիրին, օրինակ, քսաներեք տարի շարունակ ձգտում էր բևեռ հասնել։ Բայց նա հասավ միայն այն կետին, որը գտնվում էր հյուսիսային լայնության ութսունինն աստիճան հիսունհինգ րոպեի վրա. իսկ ինչպես հայտնի է, բևեռը գտնվում է հյուսիսային լայնության իննսուն աստիճա-

*նի վրա։ Պիրին այնտեղ մնաց միայն երեսուն ժամ։ Նա փորձեց չափել օվկիանոսի խորությունը, բայց անհաջող։ Եվ նա ստիպված եր դարձավ։*

*Վերջին երեք հարյուր տարվա ընթացքում հաղթահարելով բոլոր դժվարությունները, ռուս մարդիկ ուսումնասիրել են բևեռային անծայրածիր տարածությունները։ Նրանք ուզում էին իմանալ, թե ինչ է կատարվում «սառցային լռության» երկրում։ Չէ՞ որ Արկտիկայի ծովերն ու ցամաքները հսկայական տարածություններ են գրավում մեր երկրի հյուսիսում։*

*Ավելի քան տասնհինգ միլիոն քառակուսի կիլոմետր, այսինքն Արկտիկայի երկու եր-*



Զափում են օվկիանոսի խորությունը:
Ֆոտո՝ ՏԱՍՍ

*րորդը կազմում են ծովային տարածությունները։ Նրանց մեծ մասը ամբողջ տարին ծածկված է սառցադաշտերով։ Սովետական Միության սահմանների հազարավոր կիլոմետրեր ողողվում են Հյուսիսային Սառուցյալ օվկիանոսի ջրերով։ Օվկիանոսը մեծ ազդեցություն է գործում մեր երկրի կլիմայի վրա։*

*Եվ ահա, պատմության մեջ առաջին անգամ՝ 1932 թվականին, Հյուսիսային ծովային ճանապարհով մեր երկրի արևմուտքից դեպի Հեռավոր Արևելք նավագնացություն կատարեց սովետական «Սիբիրյակով» սառցահատը։ Որպեսզի այդ ճանապարհով նավաքարավաններն անվտանգ նավարկություն կատարեին, հարկավոր էր լավ իմանալ շատ բաներ և առաջին հերթին այն, թե ինչպե՞ս են առաջանում և շարժվում սառցաշերտերը օվկիանոսում, ի՞նչ եղանակ է «Աշխարհի բարձունքում»։*

*1937 թվականի մայիսի քսանմեկին սովետական մարդիկ հասան Հյուսիսային բևեռ։ «Աշխարհի բարձունքում» կանգնեցվեց մեր Հայրենիքի կարմիր դրոշը։ Պապանինականների հերոսական քառյակը սկսեց իր պատմական դրեյֆը։ Շուտով Հյուսիսային բևեռով անցավ Չկալովի կարմրաթև ինքնաթիռը, որը չտեսնված թռիչք կատարեց Եվրոպայից Ամերիկա։ Դրանից հետո այդ մարշրուտը կրկնեց սովետական օդաչու Մ. Մ. Գրոմովը։*

*1941 թվականին դեպի Արկտիկա խիզախ թռիչքներ կատարեց բևեռային հայտնի օդաչու, այժմ Սովետական Միության Հերոս Ի. Ի. Չերևիչնին։ Մի տարի հետո պապանինականների սխրագործությունը կրկնեցին մի խումբ գիտական աշխատողներ Սովետական Միության Հերոս Մ. Մ. Սոմովի գլխավորությամբ։ Նրանք ստեղծեցին «Հյուսիսային բևեռ—2» կայանը և տասներկու ամիս անընդհատ մեծ նշանակություն ունեցող գիտական հետազոտություններ կատարեցին։*

*Սովետական բևեռախույզները հայտնագործեցին, որ օվկիանոսի խորությունը խիստ փոփոխական է։ Մի տեղ հասնում է հինգ հազար մետրի, իսկ մի այլ տեղ՝ միայն հազար մետրի։ Այդ չափումների ժամանակ հայտնաբերվեց և ուսումնասիրվեց նաև Նովոսիբիրյան կղզիներից դեպի Գրենլանդիա տարածված, անդրջրյա լեռնաշղթան, որի բարձրությունը հասնում է մոտ երեք հազար մետրի։ Սովետական գիտնականներն այդ լեռնաշղթան կոչեցին Լոմոնոսովի անունով։ Նրանց ուսումնասիրությունները հերքեցին մինչ այդ եղած այն կարծիքը, թե կյանքը կենտրոնական Արկտիկայում չափազանց աղքատ է։*

*1954 թվականի գարնանային առավոտնե-*

րից էր։ Մերձմոսկովյան մի օդանավակայանից մեկը մյուսի հետևից օդ էին բարձրանում տրանսպորտային հսկա ինքնաթիռները։ Նրանք ուղղություն վերցնելով դեպի Հյուսիս, անհետանում էին կապույտ երկնքում։ Այդ ինքնաթիռները վարում էին բևեռային փորձված օդաչուներ Ի. Պ. Մազուրուկը, Ի. Ի. Չերևիչնին, Ի. Ս. Կոտովը, Մ. Ա. Տիտլովը և ուրիշները։ Էքսպեդիցիան գլխավորում էր Հյուսիսային ծովային ճանապարհների Գլխավոր վարչության պետ Վ. Ֆ. Բուրխանովը։ Էքսպեդիցիայի մի մասը Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ա. Ֆ. Տրեշնիկովի գլխավորությամբ վայրէջք կատարեց հյուսիսային լայնության ութսունվեց աստիճան և արևմտյան երկարության հարյուր յոթանասունհինգ աստիճան քառասունհինգ րոպեի վրա։ Այստեղ ստեղծվեց «Հյուսիսային բևեռ—3» գիտական կայանը, որի նպատակն է ուսումնասիրել բևեռի շրջակայքը։ Սովետական Միության փորձված բևեռախույզ Ե. Ի. Տոլստիկովը գլխավորում է մյուս խումբը, որը վայրէջք է կատարել հյուսիսային լայնության յոթանասունհինգ աստիճան քառասունութ րոպեի և արևմտյան երկարության հարյուր յոթանասունհինգ աստիճան քսանհինգ րոպեի վրա։ Դա «Հյուսիսային բևեռ—4» դրեյֆող կայանն է, որը ուսումնասիրություններ է կատարում Հյուսիսային Սառուցյալ օվկիանոսում։

Ամեն օր, ամեն ժամ, օդերևութաբանները ուսումնասիրում են քամու շարժման ուղղությունը և արագությունը, օդի ճնշումը և խոնավությունը, չափում օվկիանոսի խորությունը տարբեր տեղերում և ջրի ջերմաստիճանը տարբեր խորություններում։ Նրանք հետևում են եղանակին, հետազոտություններ են կատարում հյուսիսի երկնքում, ուսումնասիրում են կենդանական աշխարհը։

Դա մի աշխատանք է, որը վիթխարի նշանակություն ունի հայրենական գիտության և տնտեսության զարգացման համար։



Դրեյֆող կայան։

Ֆոտո՝ ՏԱՍՍ

# ԿԱՐԱՊԻԿԻ ԲՈՒՆԱԿԸ

ՅՈՒ. ՌԻՏԽԵՈՒ
(Չուկոտական գրող)

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Նարտը արագորեն մոտենում է օդերևութաբանական կայանին։ Իյորեկլյոն թռչում է ձյան վրա, մոտենում կայանին և ծեծում դուռը։ Դուռը բացվում է։ Շեմքին երևում է սև մորուքով և թուխ աչքերով մի անծանոթ մարդ։ Անվստահորեն ու միևնույն ժամանակ զարմանքով նա ոտից գլուխ նայում է Իյորեկլյոյին, ժպտում և նորից ներս մտնում։ Իյորեկլյոն հասկանում է, որ ինքը նրան դուր չեկավ։ Նա կարմրած նստում է նարտի վրա։ Այդ մարդը երևի չի հավատում, որ ինքը՝ Իյորեկլյոն կարող է տանել մինչև սառցային կայան և՛ մարդկանց, և՛ գործիքները։ Չէ՞ որ նա այնքան էլ փոքր չէ։ Եվ ինչ մի դժվար բան է այդպես ճամփա գնալը։ Այդ ժամանակ դուռը բացվում է և դուրս են գալիս օդերևութաբան Յուրի Սերգեևիչը և սև մորուքով մարդը։

— Դու մի անհանգստացիր, Արամ Օհանեսովիչ,— ասում է Յուրի Սերգեևիչը,— Չուկոտկայի երեխաներն այդ հասակում ամեն ինչ կարողանում են անել։ Նա մեզ վարպե-

տորեն կտանի։ Ո՛չ, ո՛չ, դու իզուր ես կասկածում։ Այս երեխան, ինչպես դու ես ասում, մի քանի օր առաջ բուքի ժամանակ մնացել էր ձյան տակ, բայց քթի ծայրն էլ չէր սառեցրել։

Նարտի վրա տեղավորում են գործիքներով լի երեք արկղ, ձեռքի կարապիկը և ճանապարհ ընկնում։ Իյորեկյոն շատ լավ գիտի դեպի սառցե կայան տանող ճանապարհը. նա իր ընկերների հետ շատ անգամ է եղել այնտեղ։ Սառցե կայանը երկնագույն սառույցից շինված մի տնակ է։ Տնակի մեջտեղում փորված է անցք, իսկ անկյունում դրված է չուգունե վառարանը։ Պատերի մոտ կան փայտից ու սառույցից պատրաստված երկար նստարաններ։

Իյորեկյոն արկղներից ու կարապիկից արձակում է կապիչները, նստում և սպասում է Յուրի Սերգեևիչին ու նրա ուղեկցին։ Նրանց գլուխները մերթ երևում են, մերթ անհետանում սառցակույտերի հետևը։ Վերջապես, նրանք էլ են հասնում սառցակայանին։ Կարապիկը տեղավորում են կայանի մեջտեղում գտնվող անցքի կողքը, ապա բաց անում արկղները։ Էլ ի՞նչ ասես, որ չկա այդտեղ... Արամն ինչ-որ իրեր է հագցնում պողպատալարի ծայրին, իսկ Իյորեկյոն պտտեցնելով կարապիկի բռնակը՝ իջեցնում է ջրի մեջ։ Նա շատ է սիրում այդ զբաղմունքը։ Անցնում է երեք ժամ։ Վերջապես ջուրն են իջեցնում ձկան նմանվող մետաղյա ինչ-որ մի իր և սկսում են ճաշի նախապատրաստություն տեսնել։ Յուրի Սերգեևիչը վառում է վառարանը, բաց է անում երկու տուփ պահածո և լցնում



— Իսկ ո՞ւր է բռնակը։

Ճանապարհը դեպի կայան բավականին դժվար է. ամբողջ ժամանակ անցնում է խիստ սառցապատ տեղերով։ Հարկավոր է հետևել նարտին, որպեսզի նա շուռ չգա ու արկղները չթափվեն ձյան մեջ. չէ՞ որ նրանց մեջ թանկարժեք և նուրբ գործիքներ կան։ Բայց ամենից դժվարը կարապիկի բանն է։ Մի փոքր շեղումից անգամ նա նարտը թեքում է մի կողքի։ Իյորեկյոն ստիպված է լինում մի ձեռքով բռնել կարապիկը, հետո իջնել ու վազել նարտի կողքից։ Յուրի Սերգեևիչը և իր ուղեկիցը վաղուց արդեն ետ էին մնացել։ Մինչև սառցակայան հեռու չէր՝ ընդամենը հինգ կիլոմետր։ Ահա և հասանք։

թավայի մեջ։ Սառցակայանն այնպիսի անուշ բուրմունքով է լցվում, որ նույնիսկ մռայլ Արամը լեզվով ճթացնում և ասում է.

— Դե՛, արծի՛վ, սկսենք ճաշել։

Իյորեկյոն հաղթահարում է ամաչկոտությունն ու սկսում նրան հարց ու փորձ անել։ Պարզվում է, որ Արամը շատ հետաքրքիր մարդ է և կոչումով օվկիանոսագետ է։ Հետո նա ասում է, որ եթե Իյորեկյոն հաջող ավարտի դպրոցը, կարող է գնալ Լենինգրադ և ընդունվել համալսարանի աշխարհագրական ֆակուլտետը։ Նա հրապուրիչ կերպով պատմում է հեքիաթային գեղեցկություն ունեցող քաղաքի մասին, համալսարանի հայտնի եր-

կար միջանցքի մասին, որը եթե ձյունով ծածկվի, հիանալի կերպով կարելի է այնտեղ եղջերուների մրցավազք անցկացնել։

Ճաշից հետո նորից սկսվում է աշխատանքը։ Երբ աշխատանքն ավարտվում է, Իյորեկյոն արկղները և կարապիկը դասավորում է նարտի վրա։

Յուրի Սերգեևիչը և Արամ Օհաննեսովիչը գնում են առաջ։ Իյորեկյոն ստուգում է շների թաթերը։ Կարճապոչը վնասել է թաթի ծայրը. երևի սուր սառույցն է կտրել։ Իյորեկյոն կըրնատակից հանում է մորթե փոքրիկ գուլպան և հագցնում է շան թաթին։ Մյուս շները կարծես անհամբեր սպասում են ճամփա ընկնելուն։ Նրանք մրսել են և արդեն քաղցած են։ Հենց որ Իյորեկյոն շարժվելու նշան արեց, նարտը միանգամից առաջ ընթացավ։ Տղան հազիվ հասավ նարտի հետևից։ Նա վախենում էր, որ հանկարծ նարտը շուռ կգա, և հետո... Թրը՛խկ։ Այդպես էլ եղավ։ Շները կարծես խենթացել են։ Նարտը սահում է սառցակույտի վրայից, խիստ թեքվում և խրվում ձյան մեջ։ Արկղները թափվում են, կարապիկը թռչում մի կողմ։ Իյորեկյոն ամուր կառչում է նարտից։ Շները կանգ են առնում։ Իյորեկյոն մրթմրթալով ուղղում է նարտը։ Ետ է գնում, բարձրացնում առաջին արկղը, երկրորդը... Բայց կարապիկը բարձրացնել չի կարողանում։ Սարսափած նրա մոտ է տանում նարտը։ Լավ է, որ կարապիկը մի փոքր բարձրության վրա է ընկած։ Նախօրոք չափված շարժումով նա հրում է կարապիկը նարտի վրա և ճանապարհ ընկնում։ Յուրի Սերգեևիչին ու Արամին նա հասնում է ափի մոտ։

Երբ նարտի վրայից իջեցնում էին կարապիկը, Արամը հանկարծ հարցնում է.

— Իսկ ո՞ւր է բռնակը։

Եվ ճիշտ որ, բռնակը կարապիկի վրա չէր։ Նա երևի դուրս էր թռել ընկնելու ժամանակ։ Իյորեկյոն խիստ կարմրում է.

— Ես հիմա կգնամ ու կփնտրեմ...

— Ո՞ւր կգնաս։ Տեսնում ես արդեն մթնում է։ Մթության մեջ դու ի՞նչ կտեսնես,— առարկում է Յուրի Սերգեևիչը։— Մենք պահեստային բռնակ էլ ունենք։ Ավելի լավ է գնանք ընթրելու։

Իյորեկյոն ընթրիքի ժամանակ չի կարողանում հանգիստ նստել։ Ինչպե՞ս պատահեց այդ։ Նրան վստահեցին այդպիսի գործ, իսկ նա... Արամը լուռ էր։ Նրա լռությունը վատ էր նախատինքից։ Ընթրիքից հետո Իյորեկյոն հրաժեշտ է տալիս, նստում է նարտը և վերադառնում եկած հետքերով։ Այնպես էր մթնել, որ նույնիսկ շները հազիվ էին երևում։ Դժվար է այդպիսի մթության մեջ կարապիկի բռնակը գտնել։ Իյորեկյոն հասնում է մինչև սառցակայանը և ետ վերադառնում։ Ու այսպես մի քանի անգամ։ Ամենից շատ նա փնտրում է այն տեղում, որտեղ շուռ է եկել նարտը։ Նա դանդաղ քայլում է այդտեղ, ոտքի ծայրով փորփորում ձյունը։ Բայց բռնակը չկա ու չկա։

...Գիշերվա ժամը երեքին Յուրի Սերգեևիչին արթնացրեց դռան թխկոցը։ Հագնելով բաճկոնը և վալենկաները, նա մոտենում է դռանը։ Մթության մեջ նա տեսնում է ինչ-որ տղայի։ Մոտենալով, ճանաչում է Իյորեկյոյին։

— Ի՞նչ է պատահել Իյորեկյո։

— Գտա։

— Ի՞նչը գտար։

— Ահա...

Իյորեկյոն զարմացած Յուրի Սերգեևիչին մոտեցնում է կարապիկի բռնակը, միանգամից շուռ է գալիս, նստում նարտը և ճանապարհ ընկնում դեպի իրենց բնակավայրը։

Թարգմ. Մ. ԱՄԻՐՅԱՆ

# ՏՈՆԱԾԱՌ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. ԱՐ. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Մանուկները ծափ են տալիս
Ու եղևնին են զուգում.
Ամեն ճյուղին զարդ կախելիս
Ե՛վ ցնծում են, և՛ երգում.
— Այս մեծ աստղը՝ ճակատին,
Որ շողշողա նոր տարին,
Այս մի ճյուղին՝ դրոշակ,
Որ փողփողա շարունակ:
Այս մի ճյուղին՝ տրակտոր,
Այն մյուսին՝ տանձ, խնձոր,
Իսկ այն ճյուղին՝ օդանավ.
Զարդարելը վերջացավ...
Այժմ լույսերը վառենք
Շրջան բռնենք ու պարենք.
Արի, արի նոր տարի,
Գալդ բարի, նոր տարի,
Մենք անհամբեր սպասում
Քեզ շուտ տեսնել ենք ուզում.
Արի ուրախ երգերով,
Հետաքրքիր գրքերով,
Արի, արի քեզ հետ բեր
Հաղթանակի նոր օրեր:



# ՄԻՇՏ ԴԵՊԻ ՎԵՐ

Մ. ՄԱԴԱԹՅԱՆ

Ֆոտո՝ Ս. ՏԵՐ-ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

*Երևանի Պիոներների պալատի ավիամոդելային խմբակը զբաղեցնում է երեք սենյակ: Մենք մտնում ենք առաջին ընդարձակ սենյակը: Այստեղ նոր ընդունված ավիամոդելիստները, խմբակի ղեկավար ընկեր Պետիկ Ավետիսյանի ղեկավարությամբ, թղթից դեռ նոր սկսել են պատրաստել թռչող մոդելներ: Նրանք եռանդով գծագրում են թղթի վրա, կտրում, հարդարում ու փորձում թռցնել իրենց պարզագույն մոդելները: Շուտով նրանք կսկսեն պատրաստել սխեմատիկ մոդելներ:*

*Անցնում ենք հաջորդ սենյակը: Այստեղ աշխատում են արդեն փորձառու մոդելիստները: Նրանցից յուրաքանչյուրը 3—4 տարի է, որ մոդելիստ է: Շատերը մի քանի անգամ մասնակցել են ռեսպուբլիկական մրցումներին, անգամ միութենական մրցումներին, իսկ այս տարի նրանցից յոթ հոգի եղան Մոսկվայում և դիտեցին միջազգային մրց-*

ցումները: Այստեղ են երկու Ալիկները, Երզընկյան եղբայրները, Ռաֆիկ Մելքոնյանը, Գուրգեն Մանասարյանը և ուրիշները:

Սենյակի մի պատից կախված են բազմաթիվ գովասանագրեր, առաջին կարգի դիպլոմներ, փոխանցիկ դրոշ և փոխանցիկ գավաթ:

Այս գավաթը նրանք նվաճել են անցյալ տարվա ռեսպուբլիկական մրցումների ժամանակ, գրավելով թիմային առաջնությունը: Փոխանցիկ դրոշը նույնպես թիմային առաջնության համար է և 1951 թվականից գտնվում է պալատի ավիոմոդելիստների ձեռքին: Եթե երեք տարի անընդհատ առաջնության գավաթը կամ դրոշը մնան միևնույն թիմի մոտ, ապա այլևս ետ չի վերցվում: Ահա այսպես փոխանցիկ դրոշը ընդմիշտ մնաց պալատում...

Բոլոր սենյակները լիք լցված են բազմաթիվ ու բազմապիսի մոդելներով: Այստեղ կան սխեմատիկ մոդելներ, պլաններներ, ռետինե և այլ տեսակի մեխանիկական շարժիչներով, անգամ ռեակտիվային շարժիչով: Կան նաև սովետական ինքնաթիռների պատճեններ, ռադիոյով ղեկավարվող, ուղիղ գծով արագություն սահմանող, ջրի մակերեսից թռչող մոդելներ:

Բոլոր սենյակներում էլ երեխաներ կան, որոնք աշխատում են:

— Ի՞նչ մոդելով էիր մասնակցում ռեսպուբլիկական մրցումներին,— հարցնում ենք Երզնկյանին:

Նա ցույց է տալիս իր այն մոդելները, որոնցով նա մասնակցել է ավիոմոդելիստների սառնութերորդ մրցումներին:

— Որպես մեծահասակ դպրոցականների թիմի անդամ ես մասնակցել եմ ինքնաթիռի պատճեն-մոդելով, իսկ անհատական առաջնության մրցումների համար տարել էի այս երկուսը: Մեկը ռեակտիվային շարժիչով մոդել է, որ թռչում է շրջագծով: Սրանով ես սահմանեցի ռեսպուբլիկական ռեկորդ՝ մեկ ժամում 157 կիլոմետր արագություն, իսկ մյուսը ռադիոյով ղեկավարվող մոդել է, որը պատրաստել եմ իմ եղբոր՝ Վիլիկի հետ:

Նայում ենք մոդելի ներսը: Փոքրիկ ռադիոլամպերով պատրաստված ընդունիչը հազիվ մի փոքրիկ տուփի չափ լինի: 60—65 մետրի վրա անխափան աշխատում էին մոդելի ղեկերը: Երզնկյանի ռադիողեկավարման մոդելն ուներ երկու ղեկավարություն, իսկ Ալիկ Հովհաննիսյանի և Օլեգ Լեոնովի պատրաստած մոդելը ուներ չորս ղեկավարություն՝ աջ ու ձախ դարձ և մոտորի արագ ու դանդաղ պտույտներ: Այդ պահին Երզնկյանը գործի դրեց իր ռեակտիվային շարժիչը, որն աշխատում էր մեծ հնդյունով ու անխափան:

— Իսկ դու, Ռաֆի՛կ, ի՞նչ մոդելով էիր մասնակցում Ստեփանավանի մրցումներին:

— Իմ մոդելը այստեղ չէ, նա պլաներ էր և շատ լավ ճախրում էր օդում: Օդում մնաց մոտ 20 րոպե. թռավ հեռու, շատ հեռու և կորավ տեսողության դաշտից: Շատ փնտրեցինք, բայց չգտանք:



Մոդելիստների խմբակում:

— Իսկ հիմա, դու ի՞նչ ես պատրաստում:

— Դարձյալ պլաներ: Ինչո՞ւ զարմացաք. ահա Կարապետյան Վոլոդյան արդեն հինգերորդ տարին է, ինչ աշխատում է ռետինե մոտորով մոդելների վրա և միշտ էլ մի նորություն է գտնում: Մոդելիստն իր աշխատանքում նրա նման համառ պետք է լինի:

Մոտենում ենք մի խումբ մոդելիստ աղջիկների։

— Աղջիկնե՛ր, ի՞նչ եք պատրաստում։

— Մեկը պլաներ, մյուսը՝ ջրի մակերեսից թռչող մոդել և էլի ուրիշ տիպի մոդելներ։

— Մայա՛, դու մասնակցեցիր մրցումներին։

— Ո՛չ. բայց ես ահա երկու տարի է նոր ու նոր մոդելներ եմ պատրաստում։

Մոտենում ենք կչեռքին։ Ալիկ Ալեքսանյանը և Բարսեղյանը կշռում են արդեն պատրաստի մոդելը և վիճաբանում։

— Ինչի՞ մասին եք վիճում,— հարցնում ենք մենք։

— Գիտե՞ք, այս տարվա մրցումների կանոնադրությամբ,— ասում է Ալիկը,— այս տիպի մոդելների թևի և ստաբիլիզատորի ընդհանուր մակերեսը պետք է լիներ 17-ից մինչև 19 քառակուսի դեցիմետր, իսկ մոդելի քաշը՝ 230 գրամից ոչ պակաս։ Հիմա Բարսեղյանն առանց հաշվի առնելու ռետինե շարժիչի քաշը, մոդելը 80 գրամով անտեղի ծանրացրել է։

Ամենուրեք եռուզեռ է։ Շնորհալի տղաներն ու աղջիկները պատրաստվում են 1955 թվականի ռեսպուբլիկական տասնիններորդ մրցումներին։




Շ. ԹՈՐՈՍՅԱՆ

Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Բոլորը, բոլորն ուրախ անհամբերությամբ սպասում էին այդ օրվան։ Դեռ մի քանի օր առաջ ֆիզկուլտուրայի դասատուն նրանց հայտնել էր, որ նոր տարվա նախօրյակի երեկոյան տեղի կունենա դպրոցի սառցադաշտի բացումը։ Եվ ահա բոլորը տոնական տրամադրության մեջ են։ Նրանք պատրաստվում են։ Դպրոցի բակում, սառցադաշտի մոտ արդեն կանգնեցված է հսկայական ձմեռ պապին։ Երեխաներն անցկացրել են էլեկտրական լուսավորության կետեր, պատրաստել են դիմակներ՝ կառնավալի համար։ Բոլորն ուրախ են, ոգևորված։ Չէ՞ որ իրականություն էր դարձել նրանց վաղեմի ցանկությունը. դպրոցի բակում ունենալ սառցադաշտ, զբաղվել չմուշկային սպորտով։

Սառցադաշտ պատրաստելն այնքան էլ հեշտ գործ չէ, հատկապես Լենինականի ցրտաշունչ ձմռան պայմաններում։ Դասերից հետո, ազատ ժամերին, աշակերտները դպրոցի բակը տեղափոխեցին հսկայական քանակությամբ ձյուն, ապա մի քանի օր շարունակ տրորեցին, ջրեցին, հարթեցին։ Երկու շաբաթից հետո նրանց աչքերի առաջ փռված էր արծաթագույն ողորկ սառցադաշտը։

— Ձեր ցանկությունն արդեն կատարված է, վաղվանից մենք կսկսենք չմուշկներով սահել,— ասաց դասատու Սարգսյանը,— իսկ այժմ պատրաստվեցեք կառնավալի։

...Դպրոցի բակը ողողված էր էլեկտրական պայծառ լույսով։ Լույսի շողերը փռվելով սառցադաշտի վրա, առաջացրել են գեղեցիկ ցոլքեր, որոնք աչք են շլացնում։ Բարձր հընչում է փողային նվագախմբի ձայնը, տարբեր տեսակի դիմակներ հագած տասնյակ երեխաներ սառցադաշտի վրա սահում են, պարում, շնչում ձմեռային երեկոյի սառը, հաճելի, առողջարար օդը։ Անմոռանալի երեկո...

***

Դա հինգ տարի առաջ էր։ Այդ օրը անմոռանալի մնաց Լենինականի Կիրովի անվան ռուսական միջնակարգ դպրոցի աշակերտների հիշողության մեջ։ Սառցադաշտ ունե-

նալուց հետո դպրոցում սկսվեց սպորտային մեծ եռուզեռ։ Տարեցտարի խտանում էին չմուշկավորների շարքերը։ Դահուկավորների, վոլեյբոլիստների, բասկետբոլիստների, մարմնամարզիկների և այլ խմբակների կողքին կազմակերպվեց չմուշկավորների խմբակը, որի մեջ անցյալ տարի ընդգրկված էին քսանհինգ պիոներ և դպրոցական։ Խմբակի անդամները ոչ միայն իրենք սիրով զբաղվում էին չմուշկային սպորտով, այլև օգնում էին իրենց կրտսեր ընկերներին, որպեսզի նրանք էլ սահել սովորեն։ Իսկ ինչպե՞ս էին նրանք սովորում չմուշկներով սահել։

Աշակերտները պատրաստել էին փոքրիկ սահնակներ։ Նրանցից մեկը սառցադաշտով քաշում էր սահնակը, իսկ նոր սովորողը բռնում էր սահնակի հետևից և սահելով գնում։ Այսպիսով, կամաց-կամաց, նրանք վարժվում էին նախ չմուշկներով սառույցի վրա սահելուն, քայլելուն և ապա, որ ամենադժվարն է, դարձումներ կատարելուն ու թռչկոտելուն։

Ինարկե, կային և այնպիսիները, որոնք մեծ դժվարությամբ սովորեցին չմուշկներով սահել։ Այդպիսիներից էր, օրինակ, չորրորդ դասարանի աշակերտուհի Լիլիա Մուշեղյանը։

Երբ նրան ընկերուհիները հրավիրեցին սառցադաշտ, նա քիթը վեր քաշեց և ասաց.

— Ի՞հ, գործ եք գտել էլի. ես չմուշկի հետ գործ չունեմ, չեմ կարող. ես կզբաղվեմ կար ու ձևով. չմուշկն ի՞նչ աղջիկների գործ է։

— Լավ, Լիլիա՛, գոնե արի մեզ հետ և նայիր, թե ինչպես ենք սահում։ Այնտեղ շատ հետաքրքիր է,— ասաց նրան 9-րդ դասարանի աշակերտուհի, լավագույն չմուշկավոր Լյուդա Վալդմանը։ Նա մեծ դժվարությամբ համոզեց Լիլիային։

Կեսօր էր, բայց օդը սառն էր։ Սառցադաշտում ցուրտն իրեն ավելի էր զգացնել տալիս։ Լիլիան վերարկու էր հագել, բայց մրսում էր։ Նա զարմանքով նկատում էր, որ իրենից ավելի թեթև հագնված Մայինա Մորոզովան, Ալա Ավետիսյանը, Նինա Յոմինան և ուրիշները ամենևին էլ չեն մրսում։

— Ցուրտ է, կհիվանդանամ, ես գնամ,— տրտնջաց նա, սակայն Վալդմանը նրան համոզեց մնալ։

— Ա՛յ, եթե մի երկու-երեք օր գաս մեզ հետ, սովորես սահել, այլևս չես մրսի։

Լիլիան այդ օրը տեսավ, թե ինչպես ավելի ցածր դասարանների աշակերտներից շատերը ավագների հետ միասին հիանալի սահում են չմուշկներով, բոլորովին չվախենալով ցրտից։ Դրանից հետո նա մի քանի օր մտածում էր այդ մասին։

— Ինչպե՞ս է, որ մեր դասարանցի Ալան առանց վերարկուի սահում է սառցադաշտում ու չի մրսում, իսկ ես վերարկուի մեջ մրսում եմ։

Մայրը ժպտաց ու սիրալիր պատասխանեց.

— Դա նրանից է, աղջի՛կս, որ դու քո մարմինը չես վարժեցրել ցրտին։

Լիլիայի հարցերին ճիշտ այդպիսի պատասխաններ տվեցին նաև եղբայրը, ավագ ընկերուհիները, երբեմն իրենց տան հյուր եկող բարեկամները։



Սովորում են։

Մի օր էլ Լիլիան փոքր ինչ կարմրելով, մոտեցավ Լյուդային և ասաց.

— Խնդրում եմ միջնորդեք, որ ինձ նույնպես ընդունեն չմուշկավորների խմբակ։

Այսպիսով, տարեցտարի ավելացան դպրոցի չմուշկավորները։ Այս տարի արդեն չմուշկներով սահում են 300 պատանի ու աղջիկ։

***

Լենինականի ցրտաշունչ ձմեռ... Ձյունն սպիտակ սավանի նման ծածկել է փողոցները, տանիքները, հրապարակները: Նույնիսկ դպրոցի բակի սառցադաշտը հարկ է լինում



...չեն հագենում չմուշկներով սահելուց:

ամեն օր մաքրել: Երեկոյան ուժեղ սառնամանիք է: Բայց լենինականցիները սիրում են իրենց խստաշունչ, բայց առողջարար ձմեռը: Քաղաքի շրջակա բլուրների վրա սահում են հարյուրավոր դահուկավորներ: Լենինականի ցրտաշունչ ձմեռը սիրում են նաև Կիրովի անվան ռուսական միջնակարգ դպրոցի պատանիներն ու աղջիկները: Ինչքա՞ն լավ է ձմռանը սառցադաշտում: Չէ՞ որ նրանք չեն հագենում չմուշկներով սահելուց:

Այս տարի դպրոցում սովորում են նաև շատ տղաներ, որոնք ավելի լավ են մարզված: Նրանցից շատերը, ինչպես օրինակ, Վիկտոր Պիշնեը, Ռոմիկ Գրիգորյանը, Բորիս Զելյոնկինը և ուրիշներ ռուսական խոկեյ խաղալ էլ գիտեն: Եվ ահա, դպրոցի չմուշկավորների խմբակի անդամները որոշեցին այս տարի ունենալ նաև խոկեյի խմբակ, պարապել նաև սպորտի այդ ձևով:

Դպրոցի լավագույն սպորտսմենուհի, ռեսպուբլիկայի չեմպիոն Ռոզա Ստեփանյանն այդ մասին հայտնեց ֆիզկուլտուրայի դասատու Սերգեյ Սարգսյանին:

— Ընկե՛ր Սարգսյան, մեր դպրոցը միշտ առաջնություն է շահել դահուկային, չմուշկային և այլ մրցումներում: Մենք որոշել ենք՝ այս տարի կազմակերպել նաև խոկեյի խմբակ:

Ստեփանյանը ճիշտ է ասում: Լենինականի Կիրովի անվան ռուսական միջնակարգ դպրոցի սպորտսմենները քիչ հաղթանակներ չեն տարել: Սպորտային համառ պայքարի շնորհիվ նրանք նվաճել են չորս փոխանցիկ գավաթ և երեսունհինգից ավելի պատվոգրեր: Դպրոցի սպորտսմեններից շատերը լուրջ հաղթանակներ են տարել: Սպորտային վարպետությունն այստեղ է ձեռք բերել հայտնի Ալլա Կլիշևիչը:

— Իհարկե լավ եք մտածել, կունենանք նաև այդ խմբակը: Սակայն պետք է համառորեն սովորել, որովհետև խոկեյը ձմեռային սպորտի ամենադժվար ձևերից մեկն է:

— Կսովորենք, անպայմա՛ն կսովորենք, տղաներից շատերն արդեն գիտեն: Նրանք ցանկություն են հայտնել օգնել մեզ:

Պիոներների ու դպրոցականների ցանկությունը կատարվեց: Ձեռք բերվեցին անհրաժեշտ պարագաներ, և դպրոցում կազմակերպվեց խոկեյիստների խմբակը: Խմբակի անդամները մեծ ջանասիրությամբ պարապում են, կազմակերպում միջդասարանային մրցումներ և պատրաստվում քաղաքային մրցումներին:

# ԷԴԳԱՐ ՇԱՀԻՆ



«Գործազուրկը»

Օտարի հիանալի վարպետ է հայտնի նկարիչ Էդգար Շահինը: Ազգությամբ նա հայ է. ծնվել է 1874 թվականին Ավստրիայի Վիեննա քաղաքում:

Շահինի մանկական տարիներն անցնում են Կոստանդնուպոլսում: Ապա ծնողները նրան ուղարկում են Վենետիկ՝ գեղարվեստական նախնական կրթություն ստանալու: 1895 թվականին նա տեղափոխվում է Փարիզ, ընդունվում գեղարվեստի ակադեմիա, սովորում ֆրանսիական խոշոր նկարիչներ Ժան Պոլ Լորանսի և Բանժամեն Կոնստանի մոտ:

Էդգար Շահինն արդեն 1900 թվականին մասնակցում է Փարիզի համաշխարհային ցուցահանդեսին և ստանում է առաջին մեդալը: Այդ ժամանակից նրա համբավը տարածվում է:

Շահինը խոշոր ռեալիստ է: Նրա նկարները ցույց են տալիս, թե ի՜նչ նուրբ դիտողականության տեր է նա, ինչքա՜ն լավ գիտի իր շրջապատը: Նրա ստեղծած կերպարները արտահայտիչ են, խորը և համոզիչ:

Շահինի մոտ մեծ տեղ են գրավում այն ստեղծագործությունները, որոնք պատկերում են թշվառների, Փարիզի հետնախորշերի բնակիչների կյանքը:

Ահա գործազուրկը, որը քայլում է քամու դեմ հանդիման: Ահա փողոցում, տան պատի տակ քնած անապաստանները, կամ՝ դերասանները կրկեսի արենայում: Շահինը հրաշալի է պատկերում նաև ծործանավարին, որը սայլակին լծված, մեծ դժվարությամբ, լարելով վերջին ուժերը, քաշում է սայլակը Փարիզի ամայի փողոցներով: Այդպիսի նկարներից են «Աղբահանները», «Գործազուրկը», «Քնածները», «Աղքատ կիներ» և այլն:

Եվ որպես դրանց հակադրությունը, Շահինի մոտ հանդիպում ենք այնպիսի նկարների, որոնք պատկերում են շքեղ հագնված փարիզյան տիկիններին: Նրանք չեն աշխատում և ամբողջ օրը շքակառքերով զբոսնում են Բուլոնյան անտառում:

Շահինի ստեղծագործության մեջ հատուկ տեղ է գրավում դիմանկարը: Այստեղ նկարիչը բացառիկ շնորհք է ցուցաբերում: Ամենից շատ հայտնի են գրող Անատոլ Ֆրանսի, բանաստեղծ Պոլ Վերլենի, դերասանուհի Լուիզա Ֆրանսի և ուրիշների դիմանկարները: Շահինը զբաղվել է նաև գրքերի ձևավորմամբ, նկարել է պեյզաժներ:

Շահինի լավագույն նկարները Երևանի Պետական պատկերասրահի զարդն են կազմում:

Վերջերս լրացավ նկարչի ծննդյան 80 տարին:

Ն. ԱՂԱՄԱԼՅԱՆ



«Կամուրջ Բարբերիում»

Գործ՝ Է. ՇԱՀԻՆԻ

# «ՀԱՅՐԵՐԻ ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅՈՒՆԸ»

Լրացավ Երևանի Ա. Ի. Միկոյանի անվան Պատանի հանդիսատեսի թատրոնի հիմնադրման 25 տարին:

Պատանի հանդիսատեսի թատրոնը եղել է երեխաների սիրելի վայրը, նրանց դաստիարակության կուլտուրական օջախը: Թատրոնը շատ ու շատ ներկայացումներ է տվել պիոներների և դպրոցականների համար: Նա հաջողությամբ բեմադրել է թե՛ կլասիկ, և թե ժամանակակից հեղինակների պիեսները:

Թատրոնը մասնակցել է Համամիութենական մանկական թատրոնների ստուգատեսին և պատվավոր տեղ գրավել:

...Քաղաքացիական պատերազմի տարիներն են: Բժիշկ Նիկոլայ Սերգեևիչ Լոգինովը շատ դժգոհ է իր դստեր՝ Նատաշայի վարքագծից: Նատաշան լքել է հայրական տունը, ընտանեկան ապահով ու տաքուկ կյանքը և միացել նորաստեղծ Սովետական պետության պաշտպաններին, նվիրվել ռևոլյուցիայի գործին: Որքան էլ հայրն աշխատում է ետ բերել դստերը՝ Նատաշան մնում է անդրդվելի: Հայրը ի վերջո գժտվում է դստեր հետ, հրաժարվում նրանից, բայց աղջիկը շարունակում է իր գործը:

Քաղաքացիական պատերազմի դժվարին ու հերոսական տարիների մասին է պատմում Բ. Գորբատովի «Հայրերի պատանեկությունը» պիեսը, որ բեմադրել է Ա. Միկոյանի անվան Պատանի հանդիսատեսի թատրոնը:

Գորբատովի պիեսում պատկերված է այն ժամանակաշրջանը, երբ վճռվում էր մեր Հայրենիքի բախտը: Այդ անմոռաց օրերին թշնամիների դեմ անվեհեր պայքարի էին ելնում մեր հայրերն ու պապերը. այստեղից էլ պիեսի վերնագիրը:

«Հայրերի պատանեկությունը» հայրենասիրական հուզիչ մի ներկայացում է: Այնտեղ դուք կտեսնեք Նատաշա Լոգինովային, նրա մարտիկ ընկերներին՝ Անտոնին, Սանկայի Ռյաբինինին, Անդրեյչիկին, Պեսկային, Դաշային, Անտիպին, Մարուսյային և մյուսներին: Դուք կտեսնեք նրանց մարտական բարեկամությունը, նրանց դժվարին և միաժամանակ հետաքրքիր ու զվարթ առօրյան: Կծանոթանաք նրանց բնավորությանը, կզգաք նրանց կամքի ուժը և կհիշեք այդ համեստ ու անվեհեր մարդկանց: Կտեսնեք, որ մեծ հաղթանակը դժվար, շատ դժվար է ձեռք բերվել, որ այն քիչ զոհեր չի խլել մեր ժողովրդից: Ձեզ խորը վիշտ կպատճառի Նատաշա Լոգինովայի՝ այդ գեղեցիկ ու հանդուգն աղջկա հերոսական մահը...

Ներկայացման ամենահուզիչ տեսարանը վերջինն է, որ պատկերում է Կոմերիտմիության պատմական երրորդ համագումարը, որտեղ ճառ է ասել Վլադիմիր Իլյիչ Լենինը: Մեծ առաջնորդի խոսքը մարտական ընկերները դիմավորում են ցնծությամբ:

Այս ներկայացումը սովորեցնում է սիրել հայրենիքը, արժանի լինել մեր հերոս հայրերին, որոնք կյանքի գնով ստեղծել են աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը:

Պատանի հանդիսատեսի թատրոնը շատ աշխատանք է կատարել այս հայրենասիրական ներկայացումն ստեղծելու համար: Բարձր գնահատականի են արժանի ռեժիսոր Հ. Ղափլանյանի աշխատանքը, գլխավոր դերակատարների՝ Ա. Ոշտունու, Է. Վարդանյանի, Պ. Սանթրոսյանի, Ն. Զալիկյանի, Է. Էլբակյանի, Զ. Տեր-Կարապետյանի գեղեցիկ ու իմաստալից խաղը:

Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ



Մի տեսարան «Հայրերի պատանեկությունը» ներկայացումից:

Ֆոտո՝ Դ. ՇԱՔԱՐՅԱՆԻ



# ԻՆՉՊԵՍ ԵՆ ԽՈՍԵԼ ՍՈՎՈՐԵԼ

*Վ. ՔՈՍՅԱՆ*
*(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)*

Ինչպե՞ս են մարդիկ խոսել սովորել: Այս հարցը մարդկանց հետաքրքրել է շատ վաղուց: Հին ժամանակներում մարդիկ աշխատել են լուծել լեզվի ծագման հարցը, սակայն գիտության զարգացման ցածր մակարդակը հնարավորություն չի տվել: Դարեր շարունակ իշխել է լեզվի ծագման կրոնական բացատրությունը, որ լեզուն աստված է ստեղծել:

Հետագայում էլ գիտությունը, առանձնապես բուրժուական գիտությունը, լեզվի ծագման հարցում հեռու չէր գնում կրոնական բացատրությունից:

Լեզվի ծագման հարցով զբաղվել են նաև մարքսիզմի կլասիկները: Ֆրիդրիխ Էնգելսն իր աշխատություններում տվել է լեզվի առաջացման գիտական բացատրությունը: Նա ցույց է տալիս, որ կապիկից հետզհետե մարդ դարձող մեր նախահայրերը աստիճանաբար՝ հազարամյակների ընթացքում, վարժվել են հնչյուններ արտասանելուն և ստեղծել են լեզու:

Մի քանի հարյուր հազար տարի առաջ մեր նախնիները հոտերով թափառում էին արևադարձային ու մերձարևադարձային անտառներում: Նրանք սնվում էին հատապտուղներով, ընկույզներով, արմատներով, քնում էին բաց երկնքի տակ: Նրանք չունեին ապրելու կայուն բնակավայր և մի տեղ որոշ ժամանակ մնալուց հետո անցնում էին մի այլ տեղ և այսպես շարունակ: Նույն անտառներում ապրում էին բազմազան ու բազմաթիվ կենդանիներ, գազաններ, որոնք հաճախ էին հարձակվում մարդկանց վրա: Անզեն մարդիկ միայնակ չէին կարող պաշտպանվել ամեհի գազաններից: Դրա համար էլ նրանք խմբով սկսեցին դուրս գալ գազանների դեմ: Գազանին սպանելը փրկում էր նրանց կյանքը և միաժամանակ սնունդ հայթայթում նրանց: Միասնաբար կռվելու, հատապտուղներ հավաքելու, արմատներ փորելու համար մարդիկ պետք է միմյանց հետ խոսեին: Խոսելու պահանջն ավելի մեծացավ այն ժամանակ, երբ մարդիկ սկսեցին աշխատել, գործիքներ պատրաստել: Ահա այսպես առաջ եկավ լեզուն:

Նախնական մարդը դեռ շատ թույլ զարգացած ուղեղ ուներ: Նրա մտածողությունը շատ սահմանափակ էր: Նա շատ քիչ բան էր ճանաչում ու ըմբռնում, այն էլ իր մոտիկ շրջապատից:

Մյուս կողմից, մարդու բերանն ու կոկորդը արտասանության համար հարմարեցված չէին: Հազարամյակների ընթացքում սովորեց խռչափողով և բերանով՝ լեզվի օգնությամբ հոդաբաշխ հնչյուններ արտասանել: Մարդկանց առաջին արտաբերածը եղել է մոտավորապես կենդանիների ճիչերի նման: Այդ ճիչերը հազարամյակների ընթացքում հղկվել, իրարից անջատվել և ստացել են բառերի նշանակություն:

Լեզուն ստեղծել է կոլեկտիվը. անհատը չէր կարող լեզու ստեղծել: Օրինակ, մարդիկ խմբով գնում են և նրանցից մեկը որևէ կենդանի տեսնելով բացագանչում է «գայլ», խմբի մյուս անդամները կրկնում են և այդ բառը դառնում է տվյալ կենդանու անունը: Առարկաների և նրանց անունների միջև անհրաժեշտ կապ չի եղել: Եթե այդպիսի կապ լիներ, նույն առարկաները բոլոր ժողովուրդների մոտ նույն անունը կունենային: Մինչդեռ այդպես չէ: Անունները առարկաներին տրված են պատահականորեն: Հետագայում կապ է ստեղծվել առարկայի և նրա անվան միջև: Բնազդային ճիչերը պատահականորեն այս կամ այն առարկային տրվելով, աստիճանաբար վերածվել են բառերի: Տասնյակ հազարավոր տարիների ընթացքում այս ձևով ստեղծվել է նախնական աղքատիկ բառային ֆոնդը: Լեզվի զարգացման հետագա շրջանում այլևս նոր արմատներ չեն ստեղծվում, այլ եղած արմատներից կազմվում են նոր բառեր: Այս շրջանում մարդը գիտակից կերպով նոր ճանաչած առարկաները, երևույթները անվանում է՝ օգտագործելով արդեն եղած բառերը: Օրինակ՝ երբ մարդուն հայտնի էր լույսը, ապա ամեն մի առարկա, որ լույս է արձակում, կապվում է լույսի հետ: Այստեղից էլ կազմվում են լուսին, լուսատու, լուսամուտ և այլն:

Լեզուն առաջացել է ոչ թե մարդկային մի կոլեկտիվում, այլ շատ կոլեկտիվների մոտ: Սխալ է, երբ ենթադրում են, թե սկզբում միայն մեկ լեզու է եղել, որը հետագայում բաժանվելով՝ շատ լեզուների հիմք է դարձել: Ամերիկյան մայր ցամաքի, Խաղաղ և Ատլանտյան օվկիանոսների կղզիների բնակիչները ոչ մի կապ չեն ունեցել Եվրոպայի և Ասիայի բնակիչների հետ, սակայն ունեցել են իրենց սեփական լեզուն:

Նշանակում է լեզուն ծագել է ոչ թե մի տեղում, այլ շատ տեղերում:

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒՄ Է ՀԱՐՁԱԿՎԵԼ

*ՍԱԼՈ ՖԼՈՐ*
*(Միջազգային գրոսմայստեր)*

1954 թվականի շախմատային տարին նշանակալից տարի է. դեկտեմբերի քառորդին երեք մեծ քաղաքներում՝ Լենինգրադում, Գորկիում և Երևանում վերջացան շախմատի կիսաեզրափակիչ խաղերը: Ամեն մի քաղաքում խաղում էին 21 շախմատիստ: Յուրաքանչյուր կիսաեզրափակիչ խաղից ֆինալ դուրս եկան հինգ շախմատիստ:

Երևանում առաջին անգամն է տեղի ունենում շախմատի գծով այդպիսի մեծ մրցություն:

Երևանի հանդիսատեսը սիրեց Ալեքսանդր Կոտովին, որովհետև նա խաղում էր բոլորից լավ, և նրա խաղերը բովանդակալից ու հետաքրքրական էին: Երեք գրոսմայստերի շարքում ֆինալ դուրս եկավ նաև տողերիս գրողը, իսկ Լիլիենթալը ետ մնաց և նույնիսկ չմտեցավ հաղթող հնգյակին:

Նման դեպքեր տեղի են ունեցել նաև անցած տարիների ընթացքում: Այս անգամ Լենինգրադում ֆինալից դուրս մնաց Տոլուշը, իսկ Գորկիում՝ Բոնդարևսկին: Այդ փաստերը ցույց են տալիս, որ երիտասարդությունը շարունակում է հարձակվել:

Երևանում մեծ տպավորություն թողեց երիտասարդ շախմատիստ Անտոշինը (Մոսկվա), իր յուրահատուկ խելացի ու սրամիտ խաղերով: Մրցության հաղթողը նա է, մի քանի խաղեր նա տարավ քսանհինգ քայլի ընթացքում, զարմանալի ուժեղ, հարձակողական թափով: Երևանյան հանդիսատեսի սիրելի շախմատիստներից էր նաև Վիկտոր Կորչնոյը: Նա շատ մոտ է գրոսմայստերի կոչմանը: Քսանմեկ տարեկան Ե. Վասյուկովը շահեց 11,5 միավոր և ՍՍՌՄ վարպետի կոչում ստացավ:

Լենինգրադում գրոսմայստերներ Տայմանովից, Կանից և Ռագոզինից բացի ֆինալ են դուրս եկել նաև երկու երիտասարդ շախմատիստներ՝ Շչերբակովն ու Սպասսկին: Բորիս Սպասսկին աշխարհիս ամենաերիտասարդ միջազգային վարպետն է: Նրա տասնութ տարին դեռ չի լրացել:

Հայտնի է, որ Գորկու մրցություններում առաջին տեղը շահել է Եֆիմ Գելլերը:

«Հին» սերնդի տաղանդավոր շախմատիստներից ֆինալ չի ընկել նաև Հ. Կասպարյանը: Նա և առանձնապես Մոկացյանը, հաճախ չափից ավելի հոգատարություն և հյուրասիրություն էին ցուցաբերում իրենց հյուրերի նկատմամբ. համենայն դեպս իր մի շարք խաղերում Հ. Կասպարյանը ցույց տվեց, որ ինքը վտանգավոր հակառակորդ է ուզած գրոսմայստերի համար:

Երևանի մրցումների ժամանակ խաղացվեցին շատ բովանդակալից և հետաքրքրական խաղեր:

1955 թվականին սկսվելու է ՍՍՌՄ առաջնության քսաներկուերորդ եզրափակիչ մրցությունը:

Ո՞վ կհաղթի՝ ոչ ոք չգիտե: Նույնիսկ աշխարհի չեմպիոնն անգամ չգիտե, թե ինչպե՞ս կվերջանա մրցությունը: Դեռևս 1951 թվականին, մեր առաջնության մրցումներին աշխարհի չեմպիոն Բոտվիննիկը կարողացավ գրավել միայն հինգերորդ տեղը:

Երևանի Ֆիլհարմոնիայի դահլիճն ամեն երեկո լեփլեցուն էր հանդիսատեսներով. նրանց մեծամասնությունը երիտասարդություն էր: Հասկանալի է, որ նրանք շատ բան սովորեցին այդ մի ամսվա ընթացքում. բայց դա չի նշանակում, թե երիտասարդությունը դրանով պետք է բավարարվի: Նա պետք է ուսումնասիրի շախմատի տեսությունը և այն իրագործի շախմատի դաշտի վրա: Միայն այդ ճանապարհով երիտասարդությունը կարող է ստեղծել նոր բոտվիննիկներ, սմիսլովներ և պետրոսյաններ: Ես սրտանց ցանկանում եմ այդ արևավառ և հյուրասեր Հայաստանի երիտասարդությանը:




**Վիկտորինա**

1. Երևան քաղաքում կանգնեցված Վ. Ի. Լենինի հուշարձանի, Ի. Վ. Ստալինի մոնումենտ-քանդակի և Ստ. Շահումյանի հուշարձանի հեղինակը միևնույն քանդակագործն է: Ո՞վ է նա:

2. Մ. Գորկին Վ. Տերյանի օգնությամբ հայերենից ռուսերեն է թարգմանել հայ դրամատուրգի պիեսը: Ո՞ր դրամատուրգից և ի՞նչ պիես է թարգմանված:

3. Ո՞ւմ խոսքերն են՝

«Գիրքը, մի գուցե ամենաբարդ և մեծ հրաշքն է այն բոլոր հրաշքներից, որ ստեղծել է մարդկությունը իր երջանկության և ապագա հզորության ճանապարհին»:

4. Ո՞վ է Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի մուտքի առջև կանգնեցված «Բանվոր և կոլտնտեսուհի» մոնումենտալ քանդակի հեղինակը:

5. Ովքե՞ր են «Ա. Ս. Պուշկինի հրաժեշտը ծովին» կտավի հեղինակները:

6. Որտեղի՞ց և ո՞ւմ խոսքերն են.

«Մարդ, այդ հպարտ է հնչում...»

7. Ո՞ր մեծ ռուս գրողն է դիվանագիտական պաշտոնում զոհվել:

8. Ո՞վ է Մոսկվայի Կարմիր հրապարակում կանգնեցված «Մինին և Պոժարսկի» հուշարձանի հեղինակը:

### Թվաբանական հանելուկ-կատակ

Փորձիր ութ հատ «2» թվանշանով ստանալ 250.



### Ռուս մեծ գրող դրամատուրգ

Իրար տակ գրեցեք տասը անուն, յուրաքանչյուրը հինգ տառից՝ հետևյալ բովանդակությամբ.

1. Ռուս մեծ գրող, 2. Ն. Վ. Գոգոլի վիպակի հերոս, 3. Զ. Պալիաշվիլու օպերան, 4. Երաժշտական գործիք, 5. Գերմանական մեծ բանաստեղծ, 6. Մ. Գորկու վեպերից, 7. Չեխ մեծ երգիծաբան Հաշեկի հերոսը, 8. Ռիմսկի-Կորսակովի դյուցազներգական օպերան, 9. Քաղաքացիական պատերազմի հերոս, 10. Գրական ժանր:

Երբ պահանջվող անունները ճիշտ գտնվեն, ապա կենտրոնական ուղղահայաց շարքում դուք կկարդաք ռուս մեծ դրամատուրգի ազգանունը:

### Ծածկագիր



Նկարի ձախ անկյունում, գրքի վրա պատկերված պայմանական նշանի օգնությամբ փորձեցեք կարդալ ծածկագիրը:

### Կրիպտոգրամա

Կրիպտոգրամայի լուծման համար հարկավոր է գտնել նշված հարցերի պատասխանները և դրանց տառերը տեղադրել համարներով ցույց տրված համապատասխան վանդակներում: Անունները ճիշտ գտնելու և դասավորելու դեպքում դուք կկարդաք կրիպտոգրամայի տեքստը:

1) 7, 2, 12, 3—քաղաք և նավահանգիստ Ֆրանսիայում, 2) 14, 2, 3—շինանյութ, 3) 5, 10—ռուս նշանավոր նկարիչ, 4) 6, 2, 6, 6, 15, 6—քաղաք Չինաստանի հարավում, 5) 4, 11, 3—խորը գոգավորություն լեռներում, 6) 13, 8, 2, 3, 8—սպորտային խաղի սկիզբ. 7) 9, 3, 9, 10, 13—ներկայացման վայր, 8) 1, 2, 6, 2, 6—արևադարձային բույս և միրգ. 9) 11—ձայնավոր տառ:





## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ի՞նչն է անձայն
Մեզ հետ խոսում,
Մեր բերանով
Մեզ բան ասում։

Նա իմ ձեռքին—
Մայրին՝ ծայր,
Մայրի ծայրին՝
տառ ու բառ։

Ի՞նչ գնդակ է
Մեջը լի
Ալ հատիկներ
Հյութալի։

Ինքը ներքև
Մեջը՝ հուր,
Պոչը վերև
Ներսը՝ մաքուր։

Ս. ԱՐՇԱԿՅԱՆ

## ԽԱՂԵՐ

### ԱՐԳԵԼՎԱԾ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ

Ընկեր Հասմիկը ցույց տվեց երկու շարժում՝ ձեռքերը գլխի երկու կողմը վեր պարզված և առաջ կռանել։



— Այս երկու շարժումը լավ հիշեցեք,— ասաց նա,— ես հիմա ձեռքի, ոտքի, իրանի, գլխի շատ ու շատ շարժումներ կանեմ, դուք էլ ինձ հետ կատարեցեք: Բայց երբ ես կատարեմ արգելված շարժումները, դուք չկատարեք: Ով որ սխալվեց, թող երգի կամ պարի:

Խաղն սկսվեց:

## ՓՈՐՁԻՐ ՀԱՂԹԵԼ

Ընկեր Սարգսի պահանջով Վաչիկն ու Մանվելը վերարկուներով մոտեցան նրան:

— Վերարկուները բռնեցեք աջ ձեռքով և կանգնեցեք ինձանից կես քայլ հեռու, մեկդ աջ կողմը, իսկ մյուսը՝ ձախ:



Տղաները կանգնեցին:

— Այժմ հագեք ձեր վերարկուները:

Վաչիկն ու Մանվելը սկսեցին հագնել, իսկ ընկեր Սարգիսը խանգարում էր նրանց: Տղաները չարչարվում էին ու դժվարանում հագնել:

Մենք բռնկվել էինք լիքը ծիծաղով և անհամբեր սպասում էինք, թե վերջիվերջո ով հաջողությունն կունենա շուտ հագնել: Անցավ մեկ-երկու րոպե և ահա Մանվելը հագավ:

Բոլորը նրան ծափահարեցին:

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Լենինի հիշատակին — Խ. ԶԱՐԵՆՑ
2. Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին — Գ. ԿՐԺԻԺԱՆՈՎՍԿԻ . . . . . . . 2
3. Նոր տարին — Ա. ՊՈՂՈՍՅԱՆ . . . . 8
4. Լենինը — Վ. ՏԱԼՅԱՆ . . . . . 9
5. Բազեիկը — Վ. ԼԱՑԻՍ . . . . . . 10
6. Ձմեռային գիշերվա երազը—Ա. ՇԱՀԻՆՅԱՆ 14
7. Հեռավոր ճյուղխում . . . . . . 17
8. Կարապիկի բռնակը — ՌԻՏԽԵՈՒ . . . 19
9. Տոնածառ — Թ. ՂԱՐԻԲՅԱՆ . . . . . 22
10. Միշտ դեպի վեր — Մ. ՄԱԴԱԹՅԱՆ . . . 22
11. Ձմուշկների վրա — Շ. ԹՈՐՈՍՅԱՆ . . . 24
12. Մեր պատկերասրահը . . . . . . . 27
13. «Հայրերի պատանեկությունը» — Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ . . . . . . . . . 28
14. Ինչպես են խոսել սովորել — Վ. ՔՈՍՅԱՆ 29
15. Երիտասարդությունը շարունակում է նորաձևվել — Ս. ՖԼՈՐ . . . . . . . 30
16. Հետաքրքիր ժամանց . . . . . . . 30
17. Մեր օրացույցը


Շապիկի առաջին էջը՝ ֆոտոկոմպոզիցիա Ս. ԽՈՍՐՈԵՎԻ


Խմբագիր՝ ՏԱԼՅԱՆ Վ.

Խմբագրական կոլեգիա՝ ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ս.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 08292։ Պատվեր 1640։ Տիրաժ 5000։ Տպագրական $2^1/_2$ մամուլ։ Ստորագրված է տպագրության 8/I 1955 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



### Ականավոր ռևոլյուցիոները

1905 թվականին Պետերբուրգի ռազմա-բժշկական ակադեմիայի 27 տարեկան մի ուսանող, գաղտնի գրականություն, նռնակներ, ռումբեր էր մատակարարում իր ռևոլյուցիոն ընկերներին: Այդ ուսանողը Վալերիան Վլադիմիրովիչ Կույբիշևն էր: Նա հետո դարձավ Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հայտնի գործիչներից մեկը:



Կույբիշևը ծնվել է 1888 թվականին Օմսկ քաղաքում: 1904 թվականից երիտասարդը մասնակցում էր ռևոլյուցիոն շարժմանը, աշխատում էր Օմսկի սոցիալ-դեմոկրատական խմբակներում: Իսկ մի տարի անց նա արդեն Պետերբուրգումն էր և հարում էր բոլշևիկներին:

Շատ անգամ է ցարական կառավարությունը նրան դատապարտել բանտարկության ու աքսորի. բայց նա մի քանի անգամ փախել է:

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո նա Սամարայի նահանգի գործկոմի նախագահն էր:

1918—20 թվականներին, երբ մեր երկրում ծավալվեցին քաղաքացիական կռիվները, Կույբիշևը գտնվում էր Կարմիր Բանակում: Նա Ֆրունզեի հետ միասին, որպես Արևելյան ճակատի ռազմա-ռևոլյուցիոն խորհրդի անդամ, մասնակցել է Կոլչակի ջախջախմանը:

1919 թվականի աշնանը Թուրքեստան մեկնեց պարտիայի Կենտկոմի և Համառուսական Կենտգործկոմի հանձնաժողովը, որը գլխավորում էին ընկերներ Կույբիշևը և Ֆրունզեն: Կենտկոմը և Լենինը նրանց առաջադրանք էին տվել՝ օգնել Միջին Ասիայի աշխատավորությանը ոչնչացնելու սպիտակների մնացորդներին և ամրապնդելու սովետական իշխանության դիրքերն այնտեղ: Կարմիր Բանակը անցնում էր Կարա-Կումով և Կապետ-Դաղով: Դժվարին էր հատկապես Կարմիր Բանակի անցումն այդ վայրերով 1919 թվականի վերջին, Թուրքմենստանի համար արտասովոր ցուրտ ձմեռվա պայմաններում: Այդ անցումը հմտորեն գլխավորեց Կույբիշևը: Կարմիր Բանակի հանկարծակի հայտնվելը փախուստի մատնեց թշնամիներին: 1920 թվականի փետրվարին Կարմիր Բանակը գրավեց սպիտակ բանդաների վերջին հենարանը՝ Կրասնովոդսկը: Կույբիշևը Ֆրունզեի հետ միասին շատ բան արեց Միջին Ասիայի ժողովուրդների միջև բարեկամությունը վերականգնելու համար:

Հետագայում Կույբիշևը պարտիական և պետական բազմաթիվ պաշտոններ է վարել, հատկապես զբաղվել է ժողովրդական տնտեսության հարցերով: Կույբիշևը ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի և Համամիութենական Կենտգործկոմի անդամ էր:

Այս տարի լրանում է Կույբիշևի մահվան 20 տարին:

### Վահան Տերյան

1908 թվականին լույս տեսավ բանաստեղծությունների մի գիրք՝ «Մթնշաղի անուրջներ» վերնագրով: Դա երիտասարդ բանաստեղծի առաջին գիրքն էր, բայց միանգամից հռչակեց նրա անունը: Այդ բանաստեղծը Վահան Տերյանն էր:

Վահան Տերյանը ծնվել է Ախալքալաքի գյուղերից մեկում՝ Գանձայում, 1885 թվականին: Այդտեղ էլ ստացավ իր նախնական կրթությունը, իսկ հետո սովորեց Ախալքալաքում, Թիֆլիսում:

1899 թվականին հայրը Վահանին Մոսկվա տարավ: Պատանին հաջող քննություն տվեց և ընդունվեց Լազարյան ճեմարանի երրորդ դասարանը: Բայց նա դրանով չէր կարող բավարարվել: Եվ ահա, նա Մոսկվայի համալսարանում է, պատմա-լեզվագրական ֆակուլտետում, իսկ ավարտելուց հետո կրթությունը շարունակում է Պետերբուրգի համալսարանի արևելյան ֆակուլտետում:

Վ. Տերյանն դեռ ճեմարանում սկսեց գրել: 1905—1907 թվականներին մամուլում սկսում են երևալ Տերյանի առաջին բանաստեղծությունները:

Բանաստեղծն անցնում է «Սև գիշերվա» միջով: Բայց նույնիսկ այդ ժամանակ նա որոնում է «ուղիներ պայծառ»:

Ռևոլյուցիայի նոր վերելքի տարիներին մյուսների հետ միասին Տերյանը նույնպես ոգևորվեց: 1912 թվականին նա գրեց «Արևածագը», որի մեջ երգում էր վերահաս ռևոլյուցիայի մոտեցումը: Դրան հաջորդեց



«Վերադարձը», որը ռևոլյուցիոն զարթոնքի երգ էր, հայրենասիրական հրաշալի երգ:

Տերյանն անձնապես մտերիմ էր պրոլետարական մեծ գրող Մաքսիմ Գորկու հետ: Տերյանը շատ բան է սովորել Ստեփան Շահումյանից: Եվ այսպես, նա գալիս է դեպի ռևոլյուցիան, մտնում է Կոմպարտիայի շարքերը, աշխատում է Ազգությունների կոմիսարիատում ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ, ընտրվում է Համառուսական Կենտգործկոմի անդամ:

Տերյանը 1917—1920 թվականներին գրեց հոկտեմբերին նվիրված իր բանաստեղծությունները:

**Տերյանը մեծ մտահղացումներ ուներ:** Բայց դաժան հիվանդությունը ընդհատեց նրա կյանքը 35 տարեկան հասակում 1920 թվականին:

Հունվարի յոթին լրանում է բանաստեղծի մահվան 35 տարին:

ԳԻՆԸ 2 Ռ.



«ՄԻ՞ԹԵ ԿԱՐԵԼԻ Է ԱՅԴՊԵՍ...»

Գործ՝ նկ. Գ. ԱՂԱՍՅԱ